# ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ

## ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱԹԵՐԹ

ՔԱՌԱՍՆՈՒԵՐՐՈՐԴ ՏԱՐԻ

1929

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆ

ՏԻԱՐ ԳԱԼՈՒՍՏ ԿԻՒԼՊԷՆԿԵԱՆԻ ՆՊԱՍՏՈՎ

ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ



# HANDES AMSORYA

## Zeitschrift für armenische Philologie

Dreiundvierzigster Jahrgang

1929

Herausgegeben mit Unterstützung des Herrn Galust Gülbenkian

Wien

Mechitharisten-Buchdruckerei

*ԺԱ. 24, τὸ πυρφυροῦν ἱμάτιον, "հանդերձ ծիրանի", Յովհ. ԺԹ. 5. ահա երկու օրինակ եւս, ուր հայ թարգմանիչը շեղելով յոյնէն իւրովի կը գործածէ որոշիչ ածականներ, զորոնք եւ կը յետադասէ՝ ἀ ἀβαστρον μύρου, "շիշ մի իւղոյ ազնուի", Ղուկ. Է. 37, μύρῳ, "իւղով անուշիւ", Ղուկ. Է. 46։ Թարգմանչին հետեւած քերականութիւնը — կ'եզրակացընէ* Cuendet, *չենք գիտեր ո՛րքան իրաւամբ — յար եւ նման է հայ դասականներու հետեւած քերականութեան. հայ դասականները կը նախադասեն ընդհանրապէս որակական ածականները ինչպէս "սուտ" եւ կը յետադասեն որոշիչ ածականները ինչպէս "արքունի"։* Meillet*ի վերապրուած վերջին այս վճիռը սակայն բոլորովին կը տարբերի ըմբռնումէն մեծ Քերականին, որ ցոյց տալէ ետքը թէ հայ դասական լեզուն միավանկ նախադաս ածականները հոլովով կը համաձայնեցընէ գոյականին, ինչպէս միավանկ եւ բազմավանկ յետադաս ածականները, կը յարէ՝ "սուտ" միավանկ նախադաս ածականը կը մնայ միշտ անփոփոխ, ինչպէս "արքունի" բազմավանկ յետադաս ածականը* (Altarmenisches Elementarbuch, § 97)։ *Մենք կը կարծենք թէ որակական կամ՝ որոշիչ ածականներու կարգը կարելի չէ որոշ կանոններու ենթարկել, այն աստիճան կամայական է դասական հայերէնը այս կէտին մէջ։*

*(Շարունակելի։)* Հ. Ա. ՎԱՐԴԱՆԵԱՆ



# ՂԵՒՈՆԴ ԵՐԷՑ ՊԱՏՄԱԳԻՐ

## ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ-ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ ՄԸ

*Աւելի ուշադրութեան, քան որ վայելած է, արժանի էր Ղեւոնդ երէց։ Իրմով կը փակուին հայ հին մատենագրութեան երկրորդ շրջանի դռները. ինքն է ներկայացուցիչը ութերորդ դարու պատմական գրականութեան, պատմիչը մարտամբոխ ժամանակներու, արաբական հէնին երեւման եւ նուաճումներուն. երբ կը դարձնուէր հայ նկարագիրը նոր սալի վրայ, տեղի կու տար հինը, կը մոռցուէին վաղեմի աւանդութիւններ։ Նոր տիրապետութեան տակ հայ նախարարական կազմը նոր փոփոխութիւններու կ'ենթարկուէր, երկրին բախտը օտարոտի ձեռքերու կը յանձնուէր, որոնք թարմ եռանդով, նորաձեւ քաղաքականութեամբ կ'անցնէին գործի, բախտի յաջող եւ անյաջող հովերէն տարուբեր։ Բագրատունի ծառը նոր ճիւղեր կ'արձակէր հոն, մատաղատունկ նորաբողբոջ շառաւիղներ կը զարգանային, կը ծառանային բազմապտուղ բարգաւաճելու համար յաջորդ դարու մէջ։ Այս տեսարաններու հանդիսատեսն է Ղեւոնդ, որ կը փորձէ գրի աւանդել ինչ որ ականջալուր եւ ականատես կը լսէ եւ կը զգայ։*

*Բայց նա միայն արուեստաւոր պատկերահանը չէ իւր դարուն եւ ճշմարտախօս պատմիչը ժամանակին, այլ նաեւ գրական հոյակապ անձնաւորութիւն մը կը հանդիսանայ, պատկառելի իւր պարթեւական հասակով։*

### 1. ԿԵՆՍԱԳՐԱԿԱՆ ԳԾԵՐ

*Ղեւոնդի հայրենիքի, ծննդավայրի, ծնողաց, ինչպէս եւ առ հասարակ կեանքի պարագաներու մասին կը գտնուինք կատարեալ անստուգութեան մէջ։ Ժամանակակից աղբիւր չի հօսիր մեզի, որ յագեցնէր մեր հետաքրքրութեան ծարաւը։ Կենսագրական տեղեկութիւններ անոր շուրջը յուսալի էր թերեւս լսել Բագրատունի Շապուհ պատմագրէն, որ թոռնիկն էր Ղեւոնդի Մեկենասին եւ կը ծաղկէր յաջորդ դարուն մէջ, ուստի եւ կարող էր դեռ հաղորդել ընտանեկան աւանդութիւններէն ինչ ինչ, բայց չէ հասած դժբախտաբար Շապուհի պատմագրութիւնը մեր ձեռքը։ Իսկ Յովհաննէս Կաթողիկոս ի սպառ կ'անգիտանայ ինչպէս*

Ղեւոնդի պատմագիրքը, նոյնպէս անոր անձնաւորութիւնը։ Կ՚երեւայ թէ նաեւ Արծրունի պատմագրին անծանօթ մնացած է Ղեւոնդ։ Աւելի կրտսեր ժամանակի պատմիչներն ալ չեն գիտեր, բացի անունէն՝ աւելի բան։ Սակայն, ինչ որ գիտենք իր մասին, կը պարտինք ամբողջութեամբ նոյն ինքն Ղեւոնդի։

Բայց ո՞րքան անփառասէր է պատմիչս. կը խուսափէ իւր կեանքի ճանապարհի վրայ թողուլ ամենատկար հետքն անգամ, որ կարող ըլլայ մատնել իւր քայլերու ընթացքը։ Եւ ինչո՞ւ այս սքողումը, ապաւէնը ամրածածուկ թագստոցներ. խորհրդաւոր է։ Հանդէպ մեր բոլոր հարցումներուն՝ իր կեանքի պարագաներու մասին՝ լուռ է։ «Ասի, ասեն, լուաք, ուսաք»... ահա բոլոր կենդանական նշմարներն, որոնք կը ներկայացնեն զինքը կամ իբրեւ հարցասէր կամ իբրեւ հարցընկալ։ Բայց կարո՞ղ է խուզարկու միտքը, որ ճշմարտութեան ի խնդիր է, գոհանալ այս հազազափիւռ հնչիւններով։ Պարտելու համար իր յամառ լռութիւնը հարկ է բռնազբօսել զինքը, երդմնեցնել ամէն մէկ բառին քով. ո՞վ, ե՞րբ, ո՞ւր, ի՞նչպէս...։ Այս վերլուծական ճանապարհով միայն հնարաւոր պիտի ըլլայ նկրտիլ դէպ ի լոյս եւ հետազօտել այն կածանները, որուն վրայէն ընթացած են անոր քայլափոխ գարշապարները։

Խուզարկուի եւ հետազօտողի այս դերերը յանձն առած ժամանակ, պիտի կանխեմ խոստովանիլ, որ հետախուզումներս կարող են զիս չափազանցութեանց մէջ ալ գահավիժել։ Հանդոյցը եթէ կապով մ՚ալ լուծուի, շահ է գիտութեան եւ գրգիռ պիտի ըլլայ աւելի յաջող լուծման։

Հեղինակիս անուամբ մեզի ծանօթ միակ պատմական մատեանը ձեռագիրներու մէջ (տե՛ս վարը) կը վերագրուի «Ղեւոնդեայ մեծի վարդապետի» կամ պարզապէս «Ղեւոնդեայ» («Վարդապետութիւն Ղեւոնդեայ»)։ ԺԱ. դարէն յետոյ ծաղկող տոհմային մատենագիրները, որոնք ունեցած են իրենց ձեռքի տակ այս մատեանը, կը վկայեն միաբերան, թէ հեղինակն եղած է «Ղեւոնդ երէց». այսպէս Ասողիկ (7), Սամուէլ Անեցի (3), Մխիթար Անեցի (15, 44, 45), Մխիթար Այրիվանեցի (37), Կիրակոս (3) եւ այլն։

Չունինք փորձաքար, ստուգելու աւանդութեանս հաւատարմութիւնը։ Այն ժամանակաշրջանէն, ուր ապրած է Ղեւոնդ, չկայ վկայ իր անձնաւորութեան։ Չէ՞ կարող կեղծիք նկատուիլ անունս։

Որչափ ալ փորձուինք երկբայելի համարիլ անունս գրութեանս ճակատը, բայց չի կրնար որեւիցէ կասկածի ենթարկուիլ թէ հեղինակը երէց էր եւ եկեղեցական դասուն կը պատկանէր։ Բովանդակ մատեանը ներշնչուած է եկեղեցականի մը շունչով, ամէն քայլափոխի վրայ ընդառաջ կ՚ելլէ ապաշխարութեան քարոզիչը։ Նաեւ առաւել քան երէց մը հանդէս կու գայ նա. եւ պիտի արդարանար չափով մը նաեւ Ձեռագիրներու աւանդած «մեծ վարդապետ» յորջորջանքը, եթէ այլուստ ունենայինք կռուան այս ընթերցման հարազատութեան համար։ Ցամենայն դէպս Ղեւոնդ իւր «վարդապետութեամբ» կ՚իջնէ հրապարակ։

Ղեւոնդ ուսեալ անձ է, ունի գրական պատրաստութիւն. հմուտ է Աստուածաշունչի եւ հայրագիտական գրականութեան։ Իր գրչի տակ կը խօսի հրահանգուած մատենագիր մը, որ համարձակ կ՚իշխէ գրական հայերէն լեզուի։ Առանց դպրոցական մարզանքի չէր կարող իւրացուցած ըլլալ նա այս վարժութիւնը։

Բայց ո՞ւր կարող ենք փնտռել այն միջավայրը, որ հրահանգանոցն եղաւ Ղեւոնդի։ Ինձ կ՚երեւայ թէ առ ոտս Գողթնեաց եպիսկոպոսի՝ Եսայեայ, որ ապա կաթողիկոսացաւ (775—789)։ Այս ենթադրութիւնը կը թելադրէ ինձ այն հիացախառն, բարեպաշտական արտայայտութիւնը, որ կը ցուցադրէ նա իւր գրութեան մէջ հանդէպ կաթողիկոսին. «ի ժամանակին յայնմիկ (789) փոխեցաւ Երանելին առ Քրիստոս՝ սուրբ եւ ուղիղ հաւատով կաթողիկոսն Հայոց Եսայիաս» (169)։ Ղեւոնդի քով, որ այնպէս [illegible] է կաթողիկոսներու եւ առ հասարակ եկեղեցականներու[1] եւ եկեղեցական-դաւանաբանական խնդիրներու մասին խօսելու, որպէս թէ եկեղեցին գոյութիւն չունենար իրեն համար, զգածումի այսպիսի յանկարծական ժայթքում մը անակնկալ մըն է։

---

[1] Ղեւոնդ յընթացս իւր 150 տարիներու պատմութեան կը յիշատակէ հինգ կաթողիկոս, եւ այն բոլորովին պատահական կերպով. «Քահանայապետն Հայոց Ներսէս՝ շինող սրբոյ Գրիգորի» (14). «Հանդերձեցին զԿաթողիկոսն Հայոց Սահակ...» (28). «Հայրապետն տէր Տրդատ որ ի տանէ Նախարարացն Վանանդ գաւառի» (136). «յաջորդել յաթոռ հայրապետութեանն զՍտեփանոս» (170)։ Ոչ մէկ եպիսկոպոս կամ երէց չէ յիշած անունով։

Եսայի, «ի Նիգ գաւառէ յԱղապատրուշ գեղջէ», սնած եւ ուսած էր Դունոյ հայրապետանոցի մէջ, եւ յետոյ կոչուած «նախ յեպիսկոպոսութիւն ի գաւառին Գողթան, եւ ապա ի բարձր աստիճան հայրապետութեան»: Յովհաննէս Պատմաբան, որ աւանդած է անոր մասին այս մանրամասնութիւնները (107—108), կ'աւելցնէ. «եւ սորա քաղաքավարեալ զկեանս իւր իբրեւ ամս երեքտասան (775—789)՝ վախճանեալ գնի ընդ հարս իւր»:

Պարզ յարգանքի՞ արտայայտութիւն են «երանելի» «սուրբ եւ ուղիղ հաւատով կաթողիկոս» խօսքերը, թէ կը բովանդակեն անոնք առեղծուած մը: Ի՞նչ աղերսով կապուած էր Ղեւոնդ Կաթողիկոսին հետ: Որչափ խորհրդաւոր ալ երեւան անոնք այժմ, բայց ունին համեմատական գիծ մը, գծուած հանգուցեալ Եսայեայ եւ յաջորդ Ստեփանոսի մէջ, որ ընտրուած էր կաշառքով: Անոնք զգալ կու տան թէ կար անձնական ծանօթութիւն մը, մտերմական զօդ մը Ղեւոնդի եւ Եսայի կաթողիկոսի մէջ. եւ ասկէ ծնունդ առած են երախտագիտական զգածումներ իր մէջ հանդէպ Կաթողիկոսին: Ասոնց դրդապատճառները պէտք է փնտռել կա՛մ Դունի Կաթողիկոսարանը եւ կամ աւելի վաղ Գողթնեաց Եպիսկոպոսարանը:

Հաւանական կ'երեւայ թէ Ղեւոնդ գտնուած է Դուին այն աւանդութենէն քաղաքի պարիսպներու նորոգութեան մասին, զոր լսած է ծերերէն. «Առաքէ (Վլիթ) զԱբդլ-Ազիզ ոմն (710), որ էր խօթ լսելեօք, այլ խորագէտ, լի երկրաւոր իմաստութեամբ, առասպելախօս եւ առակարկու. ...չինէր վերստին զքաղաքն Դուին հզօրագոյն եւ ընդարձականիստ մեծութեամբ քան զառաջինն... քանզի ասէր զիւրմէ Աբդլ-Ազիզ. Յառաջնում աւերածին Դունայ եթէ ի ձեռն իմ եղեւ կործանումն քաղաքին... զայս բերանով իւրով ասի պատմել զինքեանէ» (35—37):

Եթէ այս տեղիքը հաւանական կ'ընծայէ տեսնել Ղեւոնդի քայլերու հետքերը Դունոյ Կաթողիկոսարանի շրջակայքը, բոլորովին անհաւանական չի թուիր նաեւ հնարաւորութիւնը իր դեգերումներուն Գողթնեաց եւ Սիւական աշխարհի մենաստաններու մէջ: Նա քաջ ծանօթ է Գողթնեաց գաւառներուն, հաղորդակցութեան ճանապարհներուն (հմմտ. 7, 8, 18, 33 եւն): Ունի առանձին միտութիւն հրապարակատես ներկայացնելու այս կողման նախարարներէն՝ Տրունիները: 775ի Արճէշի ճակատամարտին մէջ կարեւոր մասնակցութիւն կու տայ Տրունեաց իշխաններուն (144, 147), եւ պատերազմի դաշտին վրայ նահատակներու թուին մէջ կը տեսնէ անոնցմէ երեքը. «ի տոհմէ նախարարացն վախճանեցան արք չորք, երեքն ի տոհմէ Տրունեաց եւ մինն յՈւրծայ գեղջէ» (147): Տրունիները, որոնք պատմութեան մէջ առաջին անգամ հոս ռազմադաշտի վրայ կ'երեւան, Գողթնեաց Վանանդաձոր գաւառին մէջ ունէին իրենց բոյները, յայտնի՝ Վանանդ աւանով (Սիսական, 838):

Սիսական աշխարհի մէջ համբաւուած էր այս շրջանին Մաքենեաց մենաստանը, իբրեւ կեդրոն միանձնական եւ գրական կեանքի: Նշանաւոր հանդիսացան հոն Սողոմոն հարանց հայր եւ Սողոմոն Գառնեցի (ապա կաթողիկոս, 791—792): Յովհաննէս Պատմաբան կը գրէ վերջնոյս մասին. «սա... ի մանկութենէ առեալ էր զլուծ կրօնաւորութեան կարգի եւ բազում առաքինաջան երկոց զանձն տուեալ ի մեծ ուխտին Մաքենոցաց. այլ եւ վարժեալ իսկ էր ի փիլիսոփայական արուեստս եւ առաւել եւս հմուտ լեալ փսաղտութեան կրթանաց: Եւ վասն զի ի ժամանակս Սողոմոնի՝ հարանց հօր՝ յերկուս լինէր բաժանեալ ուխտն Մաքենոցաց. եւ Հայրն հարանց հասարակ բաժնիւ կրօնաւորական դասուն երթեալ բնակէր ի Ջրեսկ որ ի Շիրակ գաւառի՝ զհետ նորա եւ այս Սողոմոն չուէր գնայր» (էջ 110. Մաքենեաց վանքի մասին՝ հմմտ. Սիսական 66—68: Ջրեսկի տեղն ծանօթ չէ. Շիրակ, 172):

Ղեւոնդ երբ դառնագին կ'ողբայ Ս. Գրիգորի վանքին կողոպտումը եւ միանձանց կսկծալի կոտորածը, կը մատնէ ակամայ իւր սրտի զաղտնիքները (20—22, 25). միանձնաւորներու բարեկամը եւ եղբայրակիցը կը խօսի հոն: Ուստի եւ անհաւանական չէ, եթէ իւր ուսման մարզարանը՝ մենաստան մը ճանչնանք, Մաքենոցն կամ նոյնքան հռչականուն ուրիշ մը, ուր կարենար «վարժիլ ի փիլիսոփայական արուեստս եւ առաւել եւս հմուտ լինել փսաղտութեան կրթանաց»:

Այսպէս թէպէտ կը պակսին արտաքին հաւաստի տեղեկութիւններ իր ուսմանց ընթացքի մասին, բայց իր մատեանը հակա-

*ռակ իր փոքրիկ ծաւալին, կու տայ նեցուկ, գտնելու զինքը վանքի մը մէջ ուսմանց անձնատուր, ուր ունի իր տրամադրութեան տակ ճոխ Մատենադարան մ'ալ. այն տեղ կան Աստուածաշունչ Մատեանը, Ոսկեբերանի Մեկնութիւնները, Գրիգոր Աստուածաբանի, Նիւսացւոյ, Փիլոնի գրութիւնները, Փաւստոս, Ագաթանգեղոս, Սեբէոս եւ ուրիշներ: Յաճախակի ընթերցման տպաւորութիւնները հզօր եղած են իր մտածելու կերպի եւ ոճի վրայ:*

*Ղեւոնդ կ'ապրէր մարտամբոխ ղարաշրջանին: Այն «սարսուռի ծառայութիւնը», որուն անուրներով կալ եւ կապ էր հայ ժողովուրդը, անհանդուրժելի դարձած էր արդէն. եւ ստէպ ստէպ կը նկատուին փորձեր՝ թօթափելու զայն: Տարերային ազատագրական շարժում մըն էր* 774—775*ի լծընկէց ապստամբութիւնը, որուն սուրբ պատերազմի նկարագիր տուին եւ մասնակցեցաւ գրեթէ բովանդակ Հայաստան: Մամիկոնեաններն էին ձեռնարկուները* (140—141). *բայց նաեւ Բագրատունի սպարապետն Սմբատ, փեսան Մամիկոնեաններու, բերաւ իր մասնակցութիւնը* (142)*: Ղեւոնդ որ այնպէս մանրամասնօրէն կը նկարագրէ* (139—152) *շարժմանս սկիզբն եւ ձախող կատարածը, ինչպէս ամէն տեղ, նաեւ այս անգամ կը լռէ թէ ո՞ւր էր ինքը եւ ի՞նչ քաղաքական հայեացքի կը հետեւէր: Բայց քաջատես աչք մ'ունենալ հարկ չէ երեւան հանելու համար իր ամբածածուկ անձը մեծանիստ Դունոյ պարիսպներէն ներս. ուր ականատես է այն սգազգած տեսարանին, որով ցնցուեցաւ քաղաքը Բագաւանի առջեւ խորտակուած* (774) *արաբական բանակին բեկորներուն ի տես* (140—141)*: Յաղթող բանակին ծաղկեպսակ չընծայաբերեց Ղեւոնդ եւ ոչ ալ ձայնակից է նախարարակոյտ խորհրդի որոշումներուն՝ շարունակել կռիւները աւելի ընդարձակ ծաւալով: Իր քաղաքական հեռատեսութիւնը վաղաժամ կը գտնէ արաբական հզօր ուժի դէմ ըմբոստացումը, եւ ցնորական՝ մոլեռանդ Մոնազոնի ամբոխավար քարոզները: Հակառակ Մամիկոնեանց հայրենասէր զգածումներուն, որոնց առջեւ դրդուած էր նաեւ մեծ սպարապետն Սմբատ «յիւրմէ հաստատուն եւ յանխոնարհելի խորհրդոցն», ինքը համակարծիք է Աշոտ Բագրատունւոյ, որ չէզոք կամ արաբամէտ քաղաքականութեան հետեւող էր* (141—144)*: Այս վերաբերմունքը կը թելադրէ խորհիլ, թէ Ղեւոնդ՝ ամբողջ պատերազմի ընթացքին կամ անձնապահ մնաց ի Դուին եւ կամ անցուց ժամանակը Աշոտի հովանաւորութեան տակ, եւ հեռուէն միայն հետեւեցաւ սրտատրոփ՝ մեծ Սպարապետին, որ այժմ լսելով Արճէշի առջեւ հայ բանակին պարտութիւնը* (15 *Ապրիլ* 755) *եւ թշնամւոյն հզօր բանակով յառաջխաղացութիւնը, լքած Կարնոյ պաշարումը, արագ արագ կը նահանջէր, չենթարկելու համար իւր սակաւաձեռն զօրասիւնը թիկունքէն եւ ճակատէն յարձակման: Թշնամին Արածանիի միւս կողմը՝ Բագրեւանդի Արձնի գիւղի առջեւ բանակած՝ կը սպասէր իրեն: Միայն յանկարծական յարձակմամբ խուճապի մատնել թշնամին կարող էր անցք տալ սպարապետի գունդին: Խառնուրդը սաստիկ կ'ըլլայ. հայ գունդը արիաբար կ'ողորի. բայց անհամեմատ ուժի առջեւ կը խորտակի. «եւ անխնայ կոտորմամբ խնդրեցին զվրէժ անձանց՝ մինչեւ պարտեցան ձեռք նոցա ի ծանրութենէն զինուցն. միանգամայն զի ոմանք թափուրք մնացեալ ի զինուցն անկան ի ձեռս նոցա (թշնամեացն) եւ կոտորեցան»:* 3000 *քաջարի նահատակներ կը մնան պատուոյ դաշտին վրայ* (24 *Ապրիլ* 775)*. անոնց թուին մէջ նաեւ սպարապետն Սմբատ Բագրատունի, Մուշեղ Մամիկոնեան եւ այլք: Հայ բանակին յարձակման եւ չահատակման սաստկութիւնը ցոյց տալու համար կը յաւելու պատմիչը.* «Զի որպէս ուսաք ի նոյն իսկ ի թշնամեացն՝ *ունէին, ասէ, ընդ ինքեանս (Հայք) մարտակիցս զհրեշտակական բազմութիւնս, որ մարմնական տեսլեամբ երեւէին թշնամեացն, զի տեսանէին երիվարս եւ պաղպաս (որք) աւետարանօք եւ խնկօք առաջի նոցա երթալով՝ զօրացուցանէին զնոսա»* (150)*:*

*Թշնամիներու այս խոստովանութիւնը պատմիչը լսած ըլլալու էր կա՛մ պատերազմի դաշտին վրայ՝ պարտութենէն յետոյ, կա՛մ դէպքէն ոչ շատ ուշ «ի գաւառին Բագրեւանդայ եւ ի սահմանակիցս նորա»* (152) *ուր ասպատակեցին թշնամիները եւ անկէ անցան Պարսկաստան* (153) *եւ կա՛մ ի Դուին, ուր վերադարձաւ անշուշտ թշնամի բանակէն մաս մը:*

*Իր շփումը արաբական բանակի հետ թողուցած է հետք նաեւ էջ* 102*, ուր պատ-*

մելով Սէթ-Հարաչի արաբ զօրավարին տարած յաղթութիւնը Խազրաց վրայ Ատրպատականի մէջ (725), կը գրէ· «Հարկանէին ի նոցանէ բազում հարուածս եւ յափշտակէին ի նոցանէ զնշան գրօշին, որ էր պատկեր պղնձի, զոր դեռ եւս ունին առ ինքեանս զունդն Հարաչեայ [2], իբրեւ զպատիւ քաջութեան նախնեաց իւրեանց» (102):

Ինչպէս 775էն յառաջ, նոյնպէս անկէ ետքը Դուին էր Ղեւոնդի գործունէութեան ասպարէզը: Վերագոյն ակնարկեցի թէ այս տարի նոր բարձրացած էր հայրապետական գահին վրայ Եսայի, որուն խնամքը առիթ ունէր այժմ վայելելու առատօրէն: Ղեւոնդ կ'երեւայ թէ դեռ Դուին էր, երբ եկաւ հոն Խազմ (Խուզէյմա) ոստիկանը եւ կալանաւորեց (785 Հոկտ.) Արծրունի եղբայրներն՝ Համազասպ, Սահակ եւ Մերուժան (որոնց անցեալով յաճախ հետաքրքրուած է Ղեւոնդ, 135, 144, 146): Կրտսերագոյնը՝ Մերուժան կը սասանի մահուան արհաւիրքի առջեւ եւ կը տկարանայ հաւատքին մէջ. կ'ընդունի իսլամութիւնը. «այլ քանզի ոչ ի կամաց, այլ յերկիւղէ մահուն, որ ի վերայ էր հասանելոց, արար զայս, թերեւս զթասցի Քրիստոս ի զղջումն սրտի նորա» (163): Երկու եղբարց նահատակութեան (786 Յունուար 6) մանր նկարագրութիւնը եւ այս տողերը ցոյց կու տան թէ ներկայ էր Ղեւոնդ նոյն տարին դէպքին: «Թերեւս զթասցի Քրիստոս ի զղջումն սրտի նորա» հայրագութ զգածմանց եւ մտերիմ ծանօթութեան արտայայտութիւն է եւ յոյս կը ներշնչէ թէ Մերուժան կարող է դեռ դարձի գալ: Ուստի (790ին) երբ կը յանձնուէին մագաղաթի այդ յուսալից եւ մաղթողական տողերը, հեղինակին ծանօթ չէր դեռ Մերուժանի ճակատագրին ընթերցուածը [3]:

Ղեւոնդ Դուին էր նաեւ յաջորդ տարիներուն (786—789): Իր տողերը Իբնդոկէ հրամանատարին (կարգուած Սուլէյման ոստիկանէն, 789՞) Դուին կատարած արարքներուն նուիրուած, ականատեսի նկարագրութիւններ են: Ինքն ալ թերեւս այն կղերիկոսներու թուին մէջ էր, զորոնք Եսայի կաթողիկոսի մահէն յետոյ իր քով կանչեց Իբնդոկէ եւ սպառնալիքով պահանջեց ցուցակը եկեղեցական սպասներու, որոնցմէ մաս մը յափշտակեց «եւ որ ինչ միանգամ յաւանդս եկեղեցւոյն՝ տայր ցաւանդապահս նորին, մինչեւ յաջորդել յաթոռ հայրապետութեանն զՍտեփանոս, որ բազում կաշառօք յաջորդեալ ի հայրապետութեանն յաթոռ՝ վատնեաց զամենայն ինչս եւ զստացուածս մինչեւ եղեւ թողութիւն գիւղից եւ ծառայից եւ պարտուց» (170): Այս խօսքերով վերջակէտ կը դնէ Պատմագիրը իր տողերուն: «Որ բազում կաշառօք յաջորդեալ» տողն կշտամբա՞նք է Ստեփանոսի հասցէին, թէ գնահատանք: Ստիպուա՞ծ էր տալ կաշառք թէ հակառակ եկեղեցական ժողովին (եւ պատմագրի կամքին) հասաւ նա այդ պաշտօնին ինքնակամ: Մութ է միտքը նաեւ «վատնեաց» եւ «յաջորդել զՍտեփանոս» բառերուն. քերականօրէ՞ն միայն թէ հրամանատարն ինքնին յաջողցուց հակառակ այլ թեկնածուներու՝ յաջորդել տալ: Ըստ Յովհ. Կաթողիկոսի «յետ սորա (Եսայեայ) զՍտեփանոս ոմն ի Դուին քաղաքէ կացուցանէին յառաջնորդութեան անդ՝ ոչինչ աւելի քան զերկուս ամս կեցեալ: Եւ յետ սորա (791) Յովաբ յաջորդեալ յՈստանէն ի Կուրապաղատին ապարանից՝ իբրեւ ամիսս վեց միայն տեւեալ» (108):

Այսուհետեւ կը կորսնցնենք Ղեւոնդի հետքը պատմութեան մէջ: Այն ստոյգ է, որ նա իւր Պատմութիւնը աւարտած է 789ին (տե՛ս վարը): Ծանօթութիւն մը Պատմութեան վերջը կը յայտնէ թէ Ղեւոնդ իւր «Վարդապետութիւնն վասն ժամանակագրաց տանս Թորգոմայ» գրած է «ի հրամանէ տեառն Շապհոյ Բագրատունւոյ» (170):

Ղեւոնդ պատմութեան ընթացքին յիշատակութիւն չէ ըրած ամենեւին իւր Մեկենասի անձի մասին: Բայց Շապուհ լաւ ծանօթ է պատմութեան: Անոր նկատմամբ թանկագին տեղեկութիւններ պահպանած է Վարդան (քաղելով անշուշտ Շապուհ պատմագրի տողերէն): Ասոր համեմատ Սմբատ Բագրատունի, Հայոց սպարապետը, Աշոտի որդին, Բագրատունի տան Վասակեան ճիւղէն (տե՛ս վարը) երբ ինկաւ Արձնիի ճակատամարտին մէջ (775, Ապրիլ 24), թողուց երկու որդի. «որոց անուանքն՝ Աշոտ եւ

[2] Հարաչեայ գունդը կը յիշուի դեռ Հարուն էլ Ռաշիդի (786—809) օրով. տե՛ս Եաքուբիի տողերը՝ Մարկուարտ, Բագրատունեաց ծագումը, էջ 38—39:

[3] Եթէ ուղիղ են Արծրունի նահատակներու վկայաբանութեան տողերը (որոնք հիմնուած են առ հասարակ Ղեւոնդի տեղեկութեանց վրայ), Մերուժան մինչ իշխանական ճոխութեամբ կ'երթար «մտանել յաշխարհն Վասպուրական, տիրել փոխանակ եղբարց իւրոց», Դաւիթ Մամիկոնեան (՞) «փութացաւ վաղվաղակի ընդ առաջ նորա, պատահեաց նմա եւ եհար զգլուխ նորա եւ եբարձ զնախատինս նորա ի տանէն Արծրունեաց» (Սոփերք հայկականք, ԺԲ. 68):

*Տապուհ»: Առնեք «հասարակ բաժանեցին զհայրենիս իւրեանց. եւ զի Ջահապ (Իսմայելացի) յափշտակեալ էր մասն ինչ յԱրշարունեաց եւ խորհէր տիրել ի ձեռն կնոջն (դստեր Մուշեղայ Մամիկոնենի) բոլոր աշխարհին (անշուշտ Դուին–Բագրեւանդ–Արշարունիք–Շիրակ), զայն առին յինքեանս Աշոտ եւ Շապուհ (որոնց մայրն ալ Մամիկոնեան էր. Ղեւ. 151). եւ ելեալք զկողմամբքն Շիրակայ՝ հարին զզօրսն Իսմայելի որ անդ, եւ գրաւեցին յինքեանս զՇիրակ եւ զԱշոցք եւ զգաւառն Տայոց: Եւ այսպէս ըստ բախտին ելեալ Աշոտի քաջի չինէ զԿամախ (իմա՝ զԱնին Շիրակայ) եւ բնակեցուցանէ ի նմա զընտանիս իւր»:*

*Վարդանի այս շատ շահեկան տեղեկութիւններու մէջ ցաւալի է որ չէ հաղորդուած մեզի, թէ յատկապէս Շապուհի ի՞նչ երկրաբաժին մաս ինկաւ, երբ երկու եղբայրները «հասարակ բաժանեցին զհայրենիս իւրեանց»: Բայց այնու որ Աշոտ ընտանեօք Անիի մէջ կը նստի, կարելի է հետեւցնել թէ (Աշոցք եւ) Տայք Սպերի հետ բաժին ինկաւ Շապհոյ: Հետադայ տողերու մէջ կը պատմէ Վարդան թէ Շապուհ կ'ապաստակէ «ի կողմանս Դունայ (հաւանօրէն Ջահապի դէմ) եւ առեալ աւար բազում դառնայր»: Կոխները կը շարունակուին նաեւ յետոյ. «Իսկ Սեւադա ոմն ի տանէ Ջահապայ չորիւք հազարօք կռուեալ ընդ Աշոտոյ եւ ընդ եղբօր իւրում Շապհոյ, մեռաւ Շապուհ ի պատերազմին» (823/24): Երկու տարի ետքը կը վախճանի նաեւ Աշոտ եւ իշխանութիւնը կ'անցնի Սմբատայ, Աշոտի որդւոյն, որ «խնամէր զմնացեալ որբսն՝ զորդիսն Շապհոյ բնակեցուցեալ զնոսա յԱնի յապահովս» (78—79), ուստի տակաւին անչափահաս էին Շապհոյ որդիք, որոնցմէ միոյն անունն միայն ծանօթ է՝ Աշոտ, որ 837ին Սպերէն ընդառաջ կ'ելլէ Թէոփիլոս կայսեր եւ կ'անուանուի ապիհիւպատ պատրիկ (Ասողիկ, 144):*

*Շիրակի տիրանալը եւ այլ պարագայք տեղի ունեցած ըլլալու են Ներսեհ Կամսարականի ի դրունս Կասպից ի Դարբանդ մեռնելէն (785, Ղեւ. 161) ետքը: Ուստի 775—790 ապրած էին Սմբատ սպարապետի որդիք, տակաւին թերեւս անչափահաս ի լռութեան: Սպարապետութիւնը Բագրատունեաց երկրորդ ճիւղի՝ Բագարատեանց ձեռքն էր մինչեւ 826 (տե՛ս վարը): Եթէ Ղեւոնդ կը լռէ Սմբատ սպարապետի որդւոց գործունէութեան մասին, նոյն իսկ անոնց անունները չի յիշատակեր, պատճառը անշուշտ այն էր, որ անոնք մինչեւ 788 պատմութեան բեմի վրայ դեռ դուրս չէին ելած ականաւոր փաստակով մը: Անոնք Սպերի ձորերու մէջ ծրագիրներ կը դարբնէին քինախնդիր լինելու իրենց հօր մահուան եւ բարձրացնելու հայրենի տունը:*

*Ղեւոնդ իւր պատմութեան մէջ ակնբախ համակրութիւն մը ցոյց կու տայ դէպի Բագրատունի տունը, յատկապէս այն նոր շառաւիղին, որ Աշոտ պատրիկով կը սկսի 686ին եւ յանձին անոր թոռնիկներու Վասակայ եւ Բագրատայ կ'երկճիւղի: Այս Բագրատունի տան անձնանուէր բարեկամն է նա, հաւատարիմ ծառան, մտերիմ ծանօթը: Այդ տան թշնամիներուն թշնամին է նա: Գիտէ անոնց սերնդաբանութիւնը, նոյն իսկ խնամական կապերը, ծանօթ է բարեմասնութեանց. նոյն իսկ գաղտնի խորհուրդներուն, քաղաքական տեսակէտներուն* (orientation), *անհատական նկարագրին, դիմապատկերներուն: Անոնց սխալումները չ'ուզեր տեսնել, նոյն իսկ երբ անհաւատարիմ են ուխտին. բայց բարեդրուժ են անոնք, որոնք այդ անհաւատարմութեան վրէժխնդիր կ'ըլլան (Մամիկոնեանք): Բայց մասնաւորապէս մօտ կը ցուցնէ ինքզինք Վասակեան ճիւղին, որուն կը պատկանէր եւ իւր Մեկենասը:*

*Բագրատունի տան հետ մշակած այս մտերմութիւնը ենթադրել կու տայ, թէ Ղեւոնդ ապրած եւ գործած է ի մօտաւորութեան Բագրատունի կրկին ճիւղերու, բայց յատկապէս Սմբատ սպարապետի տան: Եւ այս է պատճառը, որ Շապուհ Բագրատունի իրեն կը յանձնէ պատմագրել, դարերուն անմահացնել իւր պապին եւ հօր արիական գործերը: Այս յանձնարարութիւնը կ'ենթադրէ նաեւ կանխաւ ծանօթութիւն Ղեւոնդի բարեհամբաւութեան եւ բարեացակամութեան: Եւ արդեօք Աշոտ եւ Շապուհ իրենց հօր նահատակական վախճանէն յետոյ՝ չյանձնուեցա՞ն Ղեւոնդի խնամքին եւ դաստիարակութեան: Պէտք է նկատի առնել հոս, որ ապա Շապուհի համանուն թոռնիկն ալ պատմագիր հանդիսացաւ:*

*Սպարապետի տան այս մերձաւորութեան, անդադար չփման արդիւնքն է իր անչափ հմտութիւնը քաղաքական իրադարձու-*

թիւններուն, զինուորական շարժումներուն, մարտական ընդհարումներուն: Նա գիտէ ոչ միայն դէպքերու ժամանակը, տեղը, ղեկավարները, այլ եւ զօրաբանակներու ոյժը, զօրաշարքերու տուած կորուստը ռազմադաշտերու վրայ, յատկապէս վերջին կէտիս նուիրած է առանձին ուշադրութիւն (124, 126, 150 եւ այլն): Անկէ բերած է ձեռք նաեւ որոշ ծանօթութիւն ռազմագիտական արուեստի, խորդախութիւններու, ռազմավիրական ճանապարհներու (140, 147), եւ վերջապէս երկրին աշխարհագրական դիրքերուն (148, 157), պարագաներ, որոնք այնքան կարեւոր են զինուորական շարժումներու եւ ճակատայարդարութեանց համար[4]:

Սպարապետի ապարանքի մերձաւորութենէն կը բղխեն նաեւ իր չրջահայեաց, լայնածաւալ պատմական տեղեկութիւններն Արաբական երկիրներու, Պարսկաստանի եւ Յունաստանի մէջ, նոյն իսկ հեռաւոր ձենական սահմաններու վրայ տեղի ունեցած արշաւանքներու, պատերազմներու եւ պատահարներու մասին: Եւ այն ոչ միայն ժամանակակից, այլ եւ անցեալ ժամանակներու (640—750) դէպքերու մասին: Երբ նա կը գրէ· «ասի, ասեն, լուաք»··· այդ եւ նման չրջապատին մէջ իրեն հետ բանակից ծերերն կ'ակնարկէ եւ սպարապետի տան բարձր հիւրերու սուրլիները:

Ի՞նչպէս եւ ո՞ւր ունեցաւ Ղեւոնդ չփում Բագրատունի տան հետ: Մեր հետազօտութիւնները բերին մեզ այն համոզմունքի, թէ անոր քայլերու հետքերը նշմարելի են Դուին, 774—789 չրջանին: Առանց տարակուսի մինչեւ 774 նաեւ Դուին կենալով կարող էր ունենալ պատեհութիւն հաղորդակցութիւն մշակելու Սպարապետի, եւ 774էն յետոյ Աշոտ Կիւրապաղատի տան հետ, որոնք անշուշտ կ'երթեւեկէին հոն՝ ոստիկանին հետ յարաբերութեան մէջ: Նաեւ չրջագայութիւններով կարող էր յարաբերութիւն մշակած ըլլալ ինչպէս Բագրատունեաց, նոյնպէս այլ նախարարութեանց հետ: Բայց այսու բացատրութիւն չի գտներ տակաւին մեր հարցումը ճշդիւ:

[4] Հմմտ. 145· «Տեղեկանայր (Ամր) ի քաղաքացւոյն անտի զորպիսութիւն զօրացն Հայոց. եթէ քանի՛ք եւ եթէ ո՛յք իցեն զօրագլուխք, եւ եթէ միաբա՛նք իցեն ի սէր միմեանց եթէ երկբայք, եթէ քաջայա՛ղթ իցեն եթէ յամրեղք, եթէ ունիցի՛ն պատրաստութիւն զինուց եթէ ոչ: Զայս ամենայն տեղեկացեալ՝ պատրաստէր ըստ նմին զզօրագլուխս զօրաց իւրոց»:

Կը կարծեմ թէ այս կէտի լուծման բանալին կ'ընձեռէ մեզի Ղեւոնդի վերջին գլուխը· գոնէ այն կու տայ հնարաւորութիւն ենթադրութիւններ ընելու պատմագրին կեանքի անստոյգ ճանապարհի համար:

Այստեղ Ղեւոնդ կը գծէ ցայտուն նկարագրութիւն մը այն անազորոյն հարստահարութեանց, որոնց նշաւակ եղած էր Արարատեան դաշտը Դունայ բռնապետներէն: Անոնք օրէ օր աւելի կը սաստկանային եւ տանջուած, հարստահարուած, ընանկացած ազգաբնակչութիւնը յուսահատութեան կը մղէին:

787ին, երբ Ովբեդլայ իբրեւ փոխարքայ եկաւ Արեւելք, վտանգն տարակուսանաց եւս առաւել կը զօրանար· «զի յայնմհետէ ոչ ոք էր տէր ընչից իւրոց. այլ առ հասարակ վարէին յաւարի: Եւ բազումք ինքնակամութեամբ թողուին զհօտս եւ զանդեայս, եւ գնային փախստական վասն ոչ բերելոյ զծանրութիւն աղէտիցն. եւ թշնամեացն վարեալ գերեվարութեամբ զանասունս եւ զստացուածս՝ վարէին յաւարի: Իսկ ապա իբրեւ այնպէս թափուրք ի ստացուածոց մնային, մերկք եւ բոկք եւ սովամահք, եւ ոչ գտանէին ապրուստ անձանց՝ դէմ եդեալ տարադէմ գնացին փախստեայ յաշխարհն Յունաց. զորոց ասեն լինել զթիւ մարդկանն աւելի քան 12·000 արանց հանդերձ կանամբք եւ մանկտեաւ» (168): «Իսկ կէսք ժողովրդեանն որք մնացին, առ սաստիկ կարօտութեանն անձնատուրք եղեն ի ծառայութիւն սորկի, փայտակոտորք եւ ջրաբերք ըստ նմանութեան Գաբաւոնացւոց» (169):

Գաղթական փախստականներու առաջնորդներն են «Շապուհ ի տոհմէ Ամատունեաց եւ Համամ որդի նորա եւ այլք ի նախարարաց Հայոց եւ նոցին հեծելոց» (168): Զուն կը խաղայ յառաջ ընդ Կող գաւառն ի սահմանս Վրաց, ուր հետամուտ թշնամւոյն հետ թեթեւ ընդհարմանէ մը ետքը՝ կ'անցնի Ակամսիս (Ճորոխ) գետն եւ կը հասնի բիւզանդական հող: Ուստի մօտաւորապէս Կոտայք—Շիրակ—Աշոցք—Կողայ գաւառ—Տայոց աշխարհ:

«Եւ իբրեւ անցին ընդ գետն՝ վաղվաղակի ազդ եղեւ արքային Յունաց Կոստանդնի: Եւ կոչեցեալ զնոսա առ ինքն՝ տայր պատիւ նախարարացն եւ նոցին հեծելոցն. եւ զայլ խառնիճաղանճն բնակեցուցանէր ի բարւոք եւ յարգաւանդ երկրի»:

Գաղթականներու չուի այս նկարագրութիւնը եւ հայրենիք մնացողներու վրայ տուած յետսահայեաց նկատողութիւնը զգալ կու տան, թէ Ղեւոնդ եւս խառնուած էր հատուած գնացած բանակին հետ: Յաջորդ տողերը՝ Եսայի Կաթողիկոսի մահը, դժոխաձեւ, չարաչուք եւ ամբարիշտ Իբնդոկէ հոռոմի զօչաքաղ արաքներն ի Դուին, եւ Ստեփաննոս կաթողիկոսի յաջորդութիւնը (169—170) տեղի ունեցած են հաւանօրէն կամ այս գաղթէն քիչ յառաջ, կամ նոյն 789 տարին: Ուստի երանելի կաթողիկոսին մահը, Ստեփանոսի կաշառքով ընտրութիւնը, Կաթողիկոսարանի կողոպտումը, եկեղեցեաց անարգութիւնը եւ երկրին տնտեսական եւ բարոյական պայմաններու անտանելի կացութիւնը ազդած են խորապէս իր նեարդներու վրայ եւ հարկադրուած է թողուլ հայրենիքը եւ դէմ եդեալ տարադէմ գնալ դէպի սահմանակից քրիստոնեայ հողաբաժին որ կը գտնուէր Բիւզանդիոնի կայսեր հովանաւորութեան տակ, լաւ համարելով «մեկնիլ ի կողմն Յունաց եւ ապրեցուցանել զանձն ի չարասէր ապիրատութենէ զրպարտողացն, ...քան տեսանել զկորուստ աշխարհիս եւ զանպատուութիւն եկեղեցեաց Քրիստոսի» (148): Այս խորհրդածութիւնը, զոր արտայայտած էր նա առթիւ մը (նկատմամբ Սմբատ սպարապետի Կարնոյ պարիսպներու առջեւ 775ին), արդարացումն էր այն քայլին, զոր պիտի կոխէր ինքը դէպքէս 15 տարի յետոյ:

Այս ենթադրութիւնը հաւանականութեան ոյժ կ'առնէ պատճառաբանութեամբս.

1. Ղեւոնդ ծանօթ է գաղթականներու ընթացած գծին. գիտէ անոնց ընդհարումը հետամուտ թշնամւոյն հետ «ի սահմանս Վրաց ի գաւառն Կող», երբ Հայ բանակը քաջութեամբ ետ կը մղէ յարձակումը, ոչ աննշանակ կորուստ պատճառելով թշնամւոյն: Իսկ իրենք առջեւը խառնած գաղթականներու խառնիճաղանճ բազմութիւնը «անցանէին ընդ գետն Ակամսիս, որ ի կողմանս Տայոց բղխեալ՝ երթայ զհիւսիսոյ արեւմտից, անցանելով ընդ Եգեր՝ մտանէ ի Պոնտոս»:

Կող գաւառը (Վրաց Կոլա կոչածը) երկիրն է Կուրի աղբիւրներու, որոնք կու գան «ի Կող գաւառէ ընդ ստորոտս Ջաւախաց» (Խոր. Սուքր. 28), ուստի Հայ բանակը, որ կու գար Շիրակ—Ախալքալաք գծով դէպի Կող (Կոլա)—Արդուին, կը տեսնէ իր առաջ Ակամսիս գետը, զոր անցնելով կը հասնի Բիւզանդական հող:

Գետի այս անունը տեղական է, այսպէս կ'անուանէին Եգերացիք եւ իրենցմէ ուսած նաեւ Յոյները, մինչ Հայք (եւ Վրացիք) Ճորոխ (Յովհ. Մամիկ. 57) եւ Վոհ (Խոր. Աշխ.) կը կոչէին: Եթէ Ղեւոնդ հոս գետի հոսանքի եւ անուան համար աչքի առաջ չունի Խորենացւոյ Աշխարհագրութիւնը («զոր Եգերացիք Ակամսիս կոչեն») պէտք է անձնական ծանօթութեան վերագրել[5]:

2. Բիւզանդական հողի վրայ, Եգերաց աշխարհին մօտ լսած ըլլալու է Ղեւոնդ այն անցքերը, որ 712ին տեղի ունեցած էին Եգերաց աշխարհի Փոյթ քաղաքին մէջ: 708ին արաբական հարկապահանջութիւններէն եւ ճնշումներէն տաղտկացած Սմբատ Բագրատունի «եւ նախարարք որ ընդ նմա, մեկնեցան յաշխարհէս եւ անցեալ խնդրեցին ի թագաւորէն Յունաց (Յուստինիանոս Բ. 705—710) քաղաք բնակութեան եւ դադարս խաչանց իւրեանց. եւ նա տայր նոցա զքաղաքն որ անուանեալ կոչի Փոյթ ի կողմանս Եգեր աշխարհին: Եւ բնակեցան ի նմա ամս վեց» (Ղեւ. 35): Ապա դրդուած Հայհաւատ Փիլիպպիկոս Վարդան կայսեր (711—713) կրօնական քաղաքականութենէն[6] եւ հրապուրուած Աբդլազիզ ոստիկանի խոստումներէն, որ «հաւանեցուցանէր զնոսա դառնալ յիւրեանցական աշխարհն», 712ին, Զատկի օրը թալանի կ'ենթարկեն քաղաքն եւ «զզանձս քաղաքին եւ զսպասս եկեղեցեացն յափշտակեալ յաւարի՝ դարձան ի Հայս հատուածեալք ի Կայսերէն Յունաց»: Հայ նախարարներու այս վարմունքը զայ-

---

[5] Վոհ այն գետն է որ Բարձր Հայքէն բղխելով՝ Բաբերդն, Սպերն ու Բերդագրակը չօչափելով «անցանէ առ Թուխարս բերդով ի Կլարճս (Կղարջք) եւ անտի յԵգր (Եգերաց աշխարհ), ընդ Նիգալ, ընդ Մրուղ (Մուրղուլ) եւ ընդ Մրիտ (Մարադիտ) գաւառս» եւ կը թափի ի Պոնտոս ծով (Սեւ ծով, Բաթումի հարաւային կողմը): Գետս «Եգերացիք կոչեն Ակամսիս եւ Խաղտիք՝ Կալամար» (Խոր.): «Քանի որ Եգերացիք գետին ամէնէն ստորին ընթացքին վրայ կը բնակէին, ուստի Ակամսիս գետին ամէնէն ստորին մասին անունն է՝ անոր ծով թափելէն յառաջ եւ Օլթիչայի հետ միանալէն ետքը: Եգերացիներէն անունն Ակամփսիս ձեւով Յունաց անցած է (տես Արիանոս, Peripl. 7, 4—5, Պրոկոպ. 2, էջ 464 «Ակամփսիս կը կոչեն զայն տեղացիք»): Հայք Եգերացիներէն կամ Յոյներէն փոխ առած են Ակամսիս անունը, զոր իբր օտար բառ կամ անուն՝ նախ Վոհ անունով կը մեկնեն, եւ յետոյ՝ Վոհի համար կը գործածեն «Ակամսիս որ է Վոհ, որ գայ ի Մեծ Հայոց» (Խոր. Աշխ.): Հմմտ. Հիւբշման՝ Հին Հայոց տեղւոյ անունները, էջ 241—242:

[6] Հմմտ. J. Laurent, L'Arménie entre Byzance et l'Islam, էջ 206 (Paris 1919):

*բոյթ կը պատճառէ Կ. Պոլիս. «եւ կայսերն լուեալ՝ ստրջացաւ ընդ եղեալ ապիրատութիւնն եւ կոչեցեալ զառաջնորդս եկեղեցեաց՝ զՄետրապօլիտն (Կիւրոս,* 705—712) *եւ զարքեպիսկոպոսունս, եւ հրամայէր նոցա նզովս գրել ի մատենի. եւ ի կատարման տօնին զատկաց հրամայէր ընթեռնուլ ի վերայ գործողաց ապիրատութեանն. քանզի ի տօնին յայնմիկ գործեցին զգործ անօրէնութեան:* Եւ ի նոյն տօնի կարգաւորեցին ամի ամի զնոյն նզովս ընթեռնուլ մինչեւ ցայսօր, *որ եւ տիրեաց իսկ ի վերայ նոցա. եւ եղեւ պատճառ կորստեան նոցա*[7]» (36):

*«Փոյթ ի կողմանս Եգեր աշխարհին» անշուշտ պէտք է հասկնալ Բաթումը (Βάθυς) եւ ոչ Կողքիսի Փոթի քաղաքը (հնոց քով Փասիս կոչուած), ինչպէս կը նոյնացուի առհասարակ: Թէ նզովքը տակաւին կիրառութեան մէջ է, Ղեւոնդ կարող էր լսած ըլլալ կամ նոյն քաղաքի մօտերը (Եգերաց աշխարհի մէջ) եւ կամ Կ. Պոլիս:*

3. *Թէ՛ վերոյիշեալ տողերու եւ թէ՛ բովանդակ պատմութեան ընթացքի մէջ աչքի կը զարնէ, որ Ղեւոնդ դիտաւորեալ նախահոգութեամբ կը զգուշանայ քննադատել որ եւ իցէ կերպով Կայսրներու քաղաքականութիւնը կամ Հռոմէներու համար աննպաստ ամենաթեթեւ արտայայտութիւն մ'անգամ թոյլ տալ իրեն: Մինչ ամբողջութեամբ յառաջ կը բերէ Լեւոն Կայսեր եւ Օմար ամիրապետի թղթակցութիւնները, ակնարկութեամբ մ'անգամ յիշատակութիւն չ'ըներ, թէ նոյն Կայսրը ապա պատկերամարտ դառնուեցաւ: Բայց դառնացած սրտով կը յիշէ թէ Եզիտ «յածեալ յայսոյն պղծութեան բռնութենէ՝ տայր հրաման փշրել եւ խորտակել զկենդանագրեալ պատկերս… Փրկչին եւ նորին աշակերտացն» եւն* (100): *Սմբատ Բագրատունւոյ կողոպուտը Փոյթի մէջ, վասն զի զայրացուց Կայսրը, ապիրատութիւն կը համարի, եւ նզովքն իրաւացի եւ անէծքն արդար: Երկրին համար քաղաքական խոհեմութիւն կը քարոզէ վիզը ծռած հպատակիլ բռնապետներուն, բայց աշխարհակործան զաղթականութիւնները դէպի Բիւզանդական հողեր չի դատափետեր իբրեւ հայրենադրժութիւն: Բիւզանդական դրօշին յաղթանակները կը հրճուեցնեն զինքը, կը ազայ երբ կը լսէ պարտութեան բօթեր: Այս համակրանքը միայն բարեպաշտ զգածումնե՞ր են, կամ պարզապէս անո՞ր համար, որ քրիստոսապակ են թագաւորները, թէ կայ թագուն ձգտում մը: Թերեւս միջավայրը, ուր կը գրէր, յունասէր երեւալ կը թելադրէր:*

4. *Ղեւոնդ գիտէ թէ գաղթականները ստացան պարարտ եւ արգաւանդ հողեր, զետեղուեցան հոն եւ կ'ապրին հանդստաւէտ, մինչ հայրենիքի մէջ ուրիշները սարուկի ծառայութեան մէջ են: Տողերս կ'ենթադրեն, որ գաղթականները գոնէ մէկ երկու տարի ճաշակեցին իրենց անդորրութեան արգասիքը. ուստի Ղեւոնդ, երբ կը գրէր, ունէր փորձառութիւնը երկրին արդիւնաբերութեան: Նոյնը խորհիլ կու տայ նաեւ նախարարներու մեծապարգեւ մեծարուիլը Կայսեր կողմանէ:*

*Եթէ այս նկատումները ունին որ եւ իցէ արժէք, պիտի ըղձէ ասկէ հարց մը. արդեօք Ղեւոնդ երէց, իբրեւ պատրաստուած անձնաւորութիւն, չմասնակցեցա՞ւ այն պատգամաւորութեան, որ գաղթականներու կողմէն ուղարկուեցաւ Կայսեր ի Կ. Պոլիս: Կամ չհրաւիրուեցա՞ւ ինքն ալ նախարարներու հետ նոյն քաղաքը:*

*Այն յաջող, պատկերաւոր նկարագրութիւնները ծովամարտերու* (106—110, 114), *տեղի ունեցած Սեւ Ծովու վրայ կամ Կ. Պոլսոյ առաջ, կը յորդորեն զմեզ մտածել, թէ պատմիչին ծանօթ եղած են մեծանիստ ծովն եւ իւր լեռնաձեւ ալիքներն եւ անդնդապտոյտ յորձանքները. նաեւ Կ. Պոլսոյ դիրքը:*

*Երբ կը պատմէ թէ* 776*ին զօրողն Մահմէտ պատերազմ հրատարակեց Բիւզանդիոնի դէմ, կը գրէ. «տայր տանել —* որպէս լուաք *— ընդ պատգամին սերմն մանանխոյ՝ զչափ երկուց գրուաց, եւ գրէր առ թագաւորն Յունաց, եթէ վաղվաղակի առաքեցից ի վերայ աշխարհիդ քո զբազմութիւն զօրաց իմոց ըստ թուոյ հատոյ մանանխոյդ»* (156): *Ո՞ւր լսած է Ղեւոնդ այս զրոյցը: Անշուշտ կը յածէր այն բերնէ բերան եւ կարող էր լսել ամէն տեղ. բայց իր ծանօթութիւնը Կայսեր պատասխանին թէ այս եւ թէ այլ դէպքերու մէջ, ենթադրել կու տայ յարմարագոյն վայր Կ. Պոլիսը:*

*Այս առթիւ ծանօթացած ըլլալու է Ղեւոնդ այն կրօնական-դաւանաբանական թղթակցութիւններու, զորոնք փոխանակած*

---

[7] *Կ'ակնարկէ Սմբատի որդիներու պատուազրկութիւնը:*

են Օմար ամիրապետ եւ Լեւոն Իսաւրացի 720ին։ Հաւանօրէն Ղեւոնդ անձամբ հայացուց զանոնք, համարելով հետաքրքրական իւր հայրենակիցներու համար, իբրեւ Մահմեդական կրօնի հերքման առաջին փորձ։ Յունարէն լեզուի հմտութեան թեթեւ նշմար մը կարծես թէ կու տայ Ղեւոնդ, երբ կը գրէ թէ «Միսիգիոն» աշխարհն Ասորւոց (իմա Μεσόγειος) հայերէն կը թարգմանուի «Միջերկրեայք» (103)։

Այս նկատառումները կարծիք կ'արծարծեն մեր մէջ ենթադրելու թէ Ղեւոնդ Բիւզանդական հողի վրայ իրեն տեւական բնակարան գտաւ Բագրատունիներու ապարանքը նախ Սպերի մէջ եւ ապա Շիրակ։ Աշոտ եւ Շապուհ եղբայրները հոս կը գտնուէին անշուշտ, երբ իրենց հայրը մեծ սպարապետն Սմբատ ապստամբութեան դրօշն պարզած Արաբացիներու դէմ կը պատերազմէր Կարինը (775)։ Իրենց հօր մահէն յետոյ՝ Բաբերդի (Սմբատաւա՞ն) ամուր պարիսպներուն ապաւինեցան փրկելու համար իրենց կեանքը վրէժխնդիր թշնամւոյն առջեւ։ Եւ երբ տեսան իրենց հօրը մեծ բարեկամ երէցը գաղթականներու թուին մէջ՝ փութացին ասպնջականել զինքը եւ առնել իրենց խնամքին տակ։ Հիւրասիրութեան այս օրերուն ահա յանձնուեցաւ Ղեւոնդի գրել անցեալ ժամանակներէն յուշեր, բայց յատկապէս անմահացնել զարերուն իրենց սիրելի հօր նահատակական վախճանը։ Յաջորդ տարիներուն հետեւած ըլլալու է Ղեւոնդ՝ Բագրատունի կորիւներուն, որոնք կ'երթային Շիրակը նուաճելու։ Այս շրջանին տուած պիտի ըլլայ նաեւ բարեկամական այցելութիւններ Տարօնի եւ Վասպուրականի Բագրատունիներուն։

Ամփոփենք վերլուծական ճանապարհով կատարուած խուզարկութիւններուս արդիւնքը։

1· Ղեւոնդ՝ երէց է· հաւանօրէն Գողթն գաւառէն (Վանանդացի՞)։ Հրահանգուած է նոյն կողմերու մենաստաններէն մէկուն մէջ, թերեւս Մաքենեաց վանքը։ Ունեցած է անձնական ծանօթութիւն Եսայի Կաթողիկոսի հետ, ի Գողթն եւ ի Դուին։ — 2· Ապրած է 770—789 շրջանին Դունայ շրջակայքը։ — 3· Գաղթած է 789 թուին բիւզանդական հող, հաւանօրէն Սպեր։ Այն տեղ գրած է իւր Պատմութիւնը 790 թուին։ — 4· Ուղեւորած է Հայաստանի այլ եւ այլ մասեր. Տարօն, Վասպուրական, Շիրակ։ Ծանօթ կ'երեւայ կայսերանիստ քաղաքին եւ յունարէն լեզուի։

Ահա մեր բոլոր գիտցածը Ղեւոնդ երէցի անձնաւորութեան մասին, իրապէս կամ թէական կերպով։

Հարցումս, թէ ո՛րչափ ապրեցաւ Ղեւոնդ, չի կրնար ուղղակի պատասխան ընդունիլ։ Դրական ոչ մէկ ապացոյց չունինք։

Իր գրուածքին մէջ ժամանակի նկատմամբ նշմարները կը հասնէին զմեզ մինչեւ 790։ Ուստի յետնագոյն եզր իր կեանքի համար կրնանք ապահովութեամբ գծել այս թուականը։ Ծնունդը պէտք է դնել դարուն առաջին կէսին։ Տեղ մը խօսելով Ղեւոնդ Սահակ Ձորափորեցւոյ պատգամագնացութեան մասին, որ նպատակ ունէր արաբական զօրավարի՝ Մահմէտի սրտմտութիւնը զիջել, կը պատմէ Կաթողիկոսի մահուամբ Մահմէտի վրայ գործուած հրաշական փոփոխութիւնը, այնպէս «որպէս լուաք ի ճշմարտախօս արանցն» (30), այս ինքն յաւանդութենէ ականատես արանցն, որոնք վախճանած են արդէն։ Դէպքը պատահած է 703ին։ Եթէ այդ ճշմարտախօս արք իբրեւ ականատեսներ պատմած են, պատմած ըլլալու են հաւանօրէն իբրեւ 70ամեայ ծերեր 15—20 տարեկան երիտասարդ Ղեւոնդի, այնպէս որ նա տպաւորելով դէպքն իւր յիշողութեան մէջ անաղարտ, կարենար 790ին գրի առնել։ Այս պարագային ծնունդը կրնանք զետեղել 730—735ին. որով 790ին, երբ կը պատմագրէր, 50—60 ամեայ հասուն տարիքի մը մէջ կ'ըլլար. եւ կ'ունենար դեռ ժամանակ վայելել լոյսը, թերեւս նոյն իսկ մինչեւ իններորդ դարու առաջին քառորդը։

(Շարունակելի) Հ. Ն. ԱԿԻՆԵԱՆ



մինչդեռ հայ լեզուի էութեան հակառակ է նման բաժանում, այսու հանդերձ հայ թարգմանիչը երբեմն սկզբնագրին սարուկ հետեւողականութեամբ կը կաղկէ խորթ նախադասութիւններ, տես τίνα δὲ ἐξ ὑμῶν τὸν πατέρα αἰτήσει ὁ υἱὸς ... ἰχθύν, μὴ ἀντὶ ἰχθύος ὄφιν ἐπιδώσει αὐτῷ, "զո՞ որ ի ձէնջ հայր խնդրիցէ որդի ... ձուկն, մի՛թէ փոխանակ ձկանն օ՞ձ տայցէ նմա", Ղուկ. ԺԱ. 11, կամ τίνα θέλετε ἀπὸ τῶν δύο ἀπολύσω ὑμῖν, "զո՞ կամիք զի արձակեցից ձեզ երկուց աստի", Մատթ. ԻԷ. 21: Թարգմանիչը սակայն առաւելապէս կը նախընտրէ դնել ածականը առընթեր գոյականին, զոր յոյնը կը նախասիրէ բաժնել ածականէն՝ τί σοι ὄνομά ἐστιν կամ τί σοι ἐστὶν ὄνομα, "զի՞նչ անուն է քո", Ղուկ. Ը. 30, τί οὖν ποιεῖς σὺ σημεῖον, "զի՞նչ նշան առնիցես", Յովհ. Զ. 30, διὰ ποῖον αὐτῶν ἔργον ἐμὲ λιθάζετε, "վասն որո՞յ գործոյ ի նոցանէ քարկոծ առնէք զիս", Յովհ. Ժ. 32: Հայ դասականները հարցականը կը դնեն նախադասութեան սկիզբը՝ ճիշդ իր պատկանած գոյականէն առաջ[4], այսպէս կը գրէ Եզնիկ "որո՞վք երեսովք զդիւապաշտսն հալածիցեն", Եզն. էջ 162 եւ կ'անգիտանան բաժանումը, որմէ Աւետարաններու հայ թարգմանիչն ալ գրեթէ միշտ կը խուսափէ իր մայրենի լեզուին սովորութիւնը յարգելու դիտումով:

(Շարունակելի) Հ. Ա. ՎԱՐԴԱՆԵԱՆ



[4] Le grec, le germanique, l'arménien et le slave tendent donc à mettre l'interrogatif en tête de la proposition et à le faire suivre par le nom sur lequel il porte եւ այլն, էջ 91:

# ՂԵՒՈՆԴ ԵՐԷՑ ՊԱՏՄԱԳԻՐ

## ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ-ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ ՄԸ

(Տես նախորդ թիւը.)

### 2. ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՁԵՌԱԳԻՐՆԵՐԸ

Ինչպէս մեր հնագոյն պատմագիրներու, նաեւ Ղեւոնդի պատմական աշխատութիւնը սակաւաթիւ ձեռագիրներու մէջ պահուած է:

1. Հրապարակի վրայ ծանօթ օրինակներու առաջեւորներն կը տանին կը հանեն զմեզ միակ հնագոյն ձեռագրի, որ կը պահուի այժմ Էջմիածնի Մատենադարանի մէջ Թ. 1722 (= Կ. ց. 1681): Ձեռագրիս նկարագրութիւնը տուած է Ն. Մառ[8]. 1927ին ունեցայ առիթ անձամբ ծանօթանալու Ձեռագրիս. բայց իմ ծանօթագրութիւններս այժմ իմ մօտս չեն. հարկ է բաւականանալ Ուսուցչապետի հաղորդած տեղեկութիւններով:

Ձեռագիրը (բնագիրն 19·2 × 11 սմ., տողք 20, թղթեայ, բոլորգիր) հաւաքածոյ մըն է. կը պարունակէ. ա. 3բ—127բ. Պատմութիւն Ղեւոնդի. բ. 128ա—214բ. Եւագրեայ բանք խրատու եւ թուղթք եւ լուծմունք. գ. 215ա—306բ Պատմութիւն Վրաց: Գրչութեան ժամանակի եւ գրչի մասին տեղեկութիւն կու տայ յիշատակարանս (թղ. 127բ).

«Կատարեցաւ վարդապետութիւն Ղեւոնդի վասն ժամանակագրաց տանս Թորգոմայ ի հրամանէ տեառն Շապհոյ Բագրատունւոյ: Որ եւ ցանկացող եղեալ սորին տէր Համազասպ ի պատուաւոր յազգէն Մամիկոնեայ. ի հալալ արդեանց ետ հրաման ծրել փծուն գրչի Սարգսի. աղաչեմ յիշեցէք յողորմածն Աստուած. եւ նմա փառք յաւիտեանս ամէն»:

Թէեւ գրութեան տարին որոշ թուականով չէ յայտնուած. բայց գրուած ըլլալու է 1279—1311 տարիներուն, Կարբի, Յովհաննավանքի մէջ: Տէր Համազասպ Մամիկոնեան այս շրջանին սոյն վանքի առաջ-

[8] Н. Марръ, Сборники притчъ Вардана. Часть III, С. Петербургъ, 1894, էջ 55—57 (= Հ. Յ. Տաշեան՝ Ժողովածոյք Առակաց Վարդանայ. Վիեննա 1900, էջ 188—189): Ձեռագրիս մասին տե՛ս նաեւ M. Brosset, Rapports sur un voyage archéologique dans la Géorgie et dans l'Arménie, III (St. Petersbourg 1849), էջ 62—63. եւ Ն. Մառ, Ամառնային ուղեւորութիւնից դէպի Հայս. Թարգմ. Ո. Անոփեան, Վիեննա 1892, էջ 21:

նորդն եւ արքեպիսկոպոսն էր, որուն յիշատակը պահպանած են կարգ մը արձանագրութիւններ նոյն Մենաստանի որմերու վրայ։ Նա ծանօթ է նաեւ գրասէրի համբաւով այլ եւ այլ ձեռագիրներէ, գրուած իր յանձնարարութեամբ [9]։

1664 թուին կը ստանայ Ջեռագիրս Յովհաննէս Կարճաւանեցի, որուն մասին է կարեւոր յիշատակագրութիւնս (թղ· 291ա)· «Պատմութիւնս Ղեւոնդեայ եւ Գիրքս Եւագրեա եւ վերջին Պատմութիւնս Վրացեաց յիշատակ է Յովհաննու Կարճաւանեցւոյ [10], որ փոխեալ կայր· վերստին նորոգեցի եւ կազմել ետու սիրելոյն իմոյ Շմաւոն վարդապետի լօռեցւոյ, ի թվիս ՌՃԺԳ (1664) ի փառս Քրիստոսի· որք վայելէք, յիշեսջիք ի Քրիստոս»։ Ոչ շատ յետոյ (1670°) ձեռագիրս կ՚իյնայ Վարդան Բաղիշեցւոյ ձեռքը, որ կը նուիրէ զայն ի դուռն Ս· Էջմիածնի 1690ին։ Վարդանի խօսքերն են· «Զստացօղ գրոցս որ կոչի Ղեւոնդ պատմագիր եւ Վրաց պատմագիր եւ Ս· Հօրն անապատաւորացն Եւագրի բանք եւ խրատք բազում։ Որ եւ Վարդան վարդապետս Բաղիշեցի ստացայ ի հալալ արդեանց իմոց· եւ ետու զյիշատակ ի դուռն սուրբ Էջմիածնի ի փրկութիւն հոգւոյ իմոյ· որք ընթեռնուք եւ օգտիք ի սուրբ գրոյս, յիշեցէք ի Քրիստոս զԲաղիշեցի Վարդան վարդապետն եւ զծնօղսն իւր· ամէն· ի թվին ՌՃԼԹ»։

Ջեռագրին այս պատմութենէն յայտնի կ՚ըլլայ, որ Էջմիածնի օրինակը արտագրուած է Սարգիս գրչէն Յովհաննավանքի համար 1279—1311 շրջանին· գրչութեան տեղը անծանօթ կը մնայ։ 1664 թուին արդէն անխնամ, փտած հանգամանքի մէջ տէր կ՚ըլլայ անոր Յովհաննէս Կարճաւանեցի, որ գեղեցիկ հոգատարութեամբ նորոգել եւ կազմել կու տայ զայն իւր աշակերտին Լօռեցի Շմաւոն վարդապետին։ Նորոգութիւնը կատարուած է ոչ միայն վնասուած թղթերու զգոյշ առընթերադրութեամբ եւ խնամեալ կազմով, այլ եւ աղճատուած թղթերու վերստին արտագրութեամբ [11]։ Ուսուցչապետը չէ նշանակած դժբախտաբար Շմաւոն վարդապետի նոր արտագրութեամբ նորոգած թղթերը։ Որքան այժմ յիշողութիւնս կը ներէ հաստատել, յատկապէս Ջեռագրին սկիզբը տեսած է այդպիսի նորոգութիւն։ Հնագոյն ձեռագրի առաջին թուղթը կ՚երեւայ թէ շատ վնասուած վիճակի մէջ գտնուած է· այս պատճառաւ ալ Շմաւոն վարդապետ հարկ տեսած է ի նորոյ արտագրել ընթեռնլի տողերը։ Որովհետեւ թղ· 1—2 ամբողջութեամբ եւ թղ· 3ա այժմ անգիր են (նորոգողէն մուծուած), ուստի կարելի է մտածել թէ նախնական օրինակին 3ա—3բ (թերեւս նաեւ 2ա—2բ) վնասուած երեսներէն հազիւ 17 տող յաջողած է փրկել։ Դժուարին է ընդունիլ գոնէ 3բ թղթի համար թէ Սարգիս գրիչ ալ ճիշդ այսպէս երկրորդ երեսէն սկսած ըլլայ իւր օրինակութիւնը։

Այս հանգամանքի մէջ հասած է Ջեռագիրս (1670ի°ն) Բաղէշ, Ամիրդոլու վանքը, բանասէր եւ պատմասէր Բաղիշեցի Վարդան վարդապետի ձեռքը։ Սա, ինչպէս կ՚երեւայ, համաձայն իր գովելի սովորութեան, հոգալով անկէ նոր արտագրութիւն մը, սկզբնագիրը յանձնած է Էջմիածնի միաբաններու խնամքին, որոնք արդեամբք ալ պահած եւ հասցուցած են մինչեւ մեր օրերը։

Սարգիս գրչի գաղափար–օրինակը կորսուած է այժմ։ Մեզի ծանօթ բոլոր օրինակները ծագած են Շմաւոն Լօռեցւոյ նո–

[9] Ի «թուին ՉԻԸ (1279) եղեւ հայր Համազասպ։ Այս Համազասպ բազում արդիւնս արար եւ բազմացոյց զգրեանս աստուածային· որ եւ բազումք կան դեռ եւս (ի մենաստանիս Յովհաննու ի Կարբի)։ Սա էր յաւուրս որդւոց իշխանին Քրդոյ· եւ վարէր զառաջնորդութիւնն մարմնաւոր իշխանութեամբ· եւ էր ինքն յազգէ Մամիկոնէից, այր փառահեղ եւ ահարկու տեսողացն։ Զայս ուսաք ի բազում գրոց յիշատակարանաց եւ յարձանաց (ի) բազում տեղիս»· Զաքարեայ Սարկաւագի Պատմագրութիւն· Գ· 30 (Էջմիածին)։ Համեմատէ անդ 19—20 յառաջ բերուած արձանագրութիւնները։ Ըստ Զաքարիայի Համազասպ իրեն յաջորդ ունեցաւ զՎասիլ, 1311 թուին։ Տես նաեւ Շահխաթունեան՝ Ստորագրութիւն Կ· Էջմիածնի եւ հինգ գաւառացն Արարատայ· Բ· (Էջմ- 1842), էջ 112։ Ալիշան Այրարատ, էջ 174։ Յովհաննավանքի Մատենադարանին համար հոգացած է 1289 թուին Մեծ Սոկրատ եւ Աղուանից Պատմութիւն (Տէր–Մովսէսեան, Սոկրատ, էջ ԻԱ)· 1293ին Ագաթանգեղոս եւ Ցաճախապատում (Ստ· Կանայեան, Ս· Էջմիածնի Մատենադարանի ձեռագիր պատմագիրները· Zeitschr. f. armenische Philologie, II, 294· հմմտ· եւ Ագաթանգեղոս, քննական հրտ·, էջ ԼԷ—ԼԹ), 1294ին Ներսեսի Լամբրոնացւոյ Սաղմոսաց Մեկնութիւնը (Յովսէփեան՝ Քարտէզ հայ հնագրութեան, 42)։ Ասոնք պահուած են այժմ Էջմիածնի Մատենադարանին մէջ։

[10] Կարճաւանեցի Յովհաննէս եղբայրն է Շօռոթի Ս· Կարապետ վանքի առաջնորդ Եսայի վարդապետի։ Կը պատահինք իրեն 1660ին Էջմիածին, ուր Ստ· Լեհացի իր խնդրանօք կը թարգմանէ Յովսեպոսի Պատմութիւնն Հրէական Պատերազմաց (հմմտ· Սիւական, էջ 305)։

[11] Վրաց Պատմութեան վերջը թերթերու անկումը Ն· Մառ կը համարի փտութեան հետեւութիւն· Աման· Ուղեւ·, էջ 21։

*բոլած այս Ձեռագրէն, ուրեմն* 1664*էն յետոյ։*

*Վարդան Բաղիշեցի, Ամիրդոլու վանքի վարդապետական գրեանց ցուցակին մէջ* (*Արարատ* 1903, *էջ* 180, *հրտ. Ս. Տէր-Յակոբեան*) *կը յիշէ հետեւեալ օրինակները։*

2· «*Եւ միւն է*[1] *Կոնդակն Տաթեւու՝ Ստեփաննոսի Սիւնեաց եպիսկոպոսի պատմագիրք, եւ*[2] *Ղեւոնդ պատմագիրք եւ*[3] *Վրաց պատմագիրք եւ*[4] *Սմբատ գիրք, ի մի տուփ*»։

3· «*Եւ միւսն է*[1] *Ձենոբ պատմագիրք եւ ի հետն*[2] *Ստեփաննոսի Տարօնացւոյն որ է Ասողիկն, եւ միւս*[3] *Ղեւոնդ պատմագիրք, եւ միւս*[4] *Վրաց պատմութիւն, եւ միւս այլ*[5] *Մխիթարայ Այրիվանեցւոյ պատմագիրք, եւ միւս այլ*[6] *Օրպէլեանց պատմութիւն* (*խմա՝ Ստ. Օրպելեանի ԿԵ գլուխը Մեսրոպ Երիցու Ներսիսի վարուց հետ*)· *այս է պատմագիրք ի մի տուփ*»։

*Ասոնք հաւանօրէն օրինակուած են նոյն վանքին մէջ նոյն Վարդանայ յանձնարարութեամբ։ Ուշադրութեան արժանի է որ երկու օրինակներու մէջ ալ կը յիշուի Վրաց պատմութիւնը, որով կը յայտնուի ծագումը Ա. օրինակէն։*

*Այս օրինակները չկան այժմ հրապարակի վրայ։*

4· *Էջմիածնի Թ.* 1686 (*Կ. ց.* 1644), *գրուած* 1675 *թուին Մարկոս գրչէն. տեղն անծանօթ* (*կը բովանդակէ՝* 1· *Եղիշէ*, 2· *Ղեւոնդ*, 3· *Մեկն. Մարկոսի*, 4· *Մ. Խորենացի*, 5· *Դաշանց թուղթ*։ *Հմմտ. Մ. Խոր. Պատմութիւն Հայոց, հրտ. Մ. Աբեղեանի եւ Ս. Յարութիւնեանի, Տփղիս* 1913, *էջ ԺԴ*)։

5· *Կարապետ արքեպիսկոպոսի օրինակն ի Տփղիս։ Բոլորգիր. ուր կան՝* 1· *Ղեւոնդ*, 2· *Պատմ. Վրաց*, 3· *Ասողիկ*, 4· *Լաստիվերտացի*, 5· *Ձենոբ* (*նոտր*)։ «*Մատեանս չունի յիշատակարան, այլ չմարթէր հնագոյն լինել քան զ*200 *ամս*» (*տեղեկութիւնք Հ. Ե. Սէթեանի՝ Սարգիսեան, Ցուցակ. Բ*, *էջ* 292)։ *Բայց Բրոսէ տեսած է հոն գրչութեան թուականը՝* 1673 (Rapports, III, p· 63)։ *Ձեռագիրս պէտք է փնտռել այժմ Էջմիածին։*

6· *Վենետիկի Մխիթարեանց Թ.* 218, *Թղ.* 86*ա*—137 (*Սարգիսեան՝ Ցուցակ, Բ*, *էջ* 277)։ *Արտագրութիւն մը Թ.* 5 *օրինակէն՝ հոգացողութեամբ Հ. Ե. Սէթեանի*, 1836*ին*։

7· *Պարիսի* Bibliothèque nationale*ի* Supplément arménien, 49 (*տե՛ս* Macler, Catalogue, Nr. 209, *էջ* 116)։ *Հանուած Թ.* 5 *Ձեռագրէն, օրինակութեամբ Կ. Վ. Շահնազարեանի։ Ասոր վրայէն կատարուած է* 1857*ի հրատարակութիւնը* (*տե՛ս էջ* 6)։

8· *Պետերբուրգի Ասիական Մուզէոնի օրինակը.* «copiée sur le manuscrit de Mgr. Carapiet, archevêque arménien de Tiflis», par Jean Nazarof. L'original etait du XVII^e^ siècle. 1842։ *Այսպէս ծանօթագրած է ձեռագրին մէջ Մ. Բրոսէ, որ նախկին ստացողն էր Ձեռագրին* (*տե՛ս* Macler, *անդ*, *էջ* 115)։ *Զայս աչքի առջեւ ունեցած է Պատկանեան՝ իւր ռուսերէն թարգմանութեան ժամանակ* (*տե՛ս Յառաջաբ.* V)։

9· *Պարիսի* Bibliothèque nationale*ի* Suppl. 110 (Macler, Nr. 208, p. 115) *օրինակութեամբ* E. Dulaurier*ի*, 1851*ին Թ.* 8 *Ձեռագրէն*։

10· *Կ. Եզեանի օրինակը. գրուած ԺԸ. դարուն՝ կը բովանդակէ.* 1· *Մ. Խորենացի*, 2· *Ասողիկ*, 3· *Լաստիվերտացի*, 4· *Եւսեբեայ Եկեղ. Պատմութիւն*, 5· *Ագաթանգեղոս եւ Դաշանց թուղթ*, 6· *Մեսրոպ երէց*, 7· *Զենոբ*, 8· *Փ. Բիւզանդ*, 9· *Եղիշէ*, 10· *Ստ. Օրպէլեան*, 11· *Պատմութիւն Հացունեաց խաչին*, 12· *Սոկրատ փոքր*, 13· *Միք. Ասորի*, 14· *Վարդան*, 15· *Կիրակոս*, 16· *Թովմ. Մեծոփեցի* (*երկրորդ գրչէ*). 17. *Սմբատ* (*երրորդ գրչէ*), 18· *Ղեւոնդ* (*Ա—ԺԳ գլուխք պակաս. երրորդ գրչէ*)։ *Ձեռագրիս մասին տես Ստեփանոս Ասողիկ, հրտ. Ս. Մալխասեան, Պետերբուրգ* 1885, *էջ ԼԴ—ԼԸ*։ *Այս օրինակի վրայէն կատարուած է Եզեանի հրատարակութիւնը*։ 1849*ին Բրոսէ* (Rapports, III, p. 59) *տեսած էր զայն Էջմիածնի Մատենադարանի մէջ։ Հոն գտնուելու է նաեւ այժմ, որովհետեւ Եզեանի Մատենադարանը փոխադրուած է Էջմիածին*։

11· *Էջմիածնի Կարինեան Ցուցակ*, 1680· «*Ղեւոնդեայ մեծ վարդապետի Պատմութիւն Մահմետի քառածալ մեծ բոլորգիր, գրեալ ի թղթի ի Սարգսէ. ունի զՄահմետի պատմութիւն եւս եւ զցանկն. չունի զյիշատակարան. ի սկիզբն ունի զթերութիւն*»։ *Ցուցակագրին այս տողերը կասկածելի են. տեղեկութիւնները կը հային Թ.* 1681 *Ձեռագրին* (= *մեր Թ.* 1)։ *Պէտք է քննել Ձեռագիրը ի մերձուստ*։

12. *Վենետիկի Մխիթարեան Մատենադարանի Ա. օրինակը «նօտր, թերի» սկիզբէն եւ վերջէն. տես այս մասին Նոր Բառագիրք Հայկազեան լեզուի. Ա,* էջ 14. S. Somal, Quadro della storia letteraria di Armenia, Venezia 1829, էջ 62:

*Այս ծանօթ օրինակները կարելի է համախմբել այսպէս.*




### 3. ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՎԵՐՆԱԳԻՐԸ, ԿԱԶՄԸ

*Ղեւոնդի աշխատութիւնը Էջմիածնի Թ.* 1722 *Ձեռագրին մէջ այժմ խորագիր կը կրէ. «Պատմաբանութիւն* (10 *Պատմութիւն) Ղեոնդեայ մեծի վարդապետի Հայոց որ յաղագս երեւելոյն Մահմետի. եւ զկնի նորին եւ թէ որպէս եւ* (10,6 *եւ կամ) որով օրինակաւ տիրեցին տիեզերաց, եւս առաւել թէ* (10 չիf *թէ) Հայոց ազգիս»* (10 *ազգիս Հայոց)*:

*Ասողիկ այս պատմական աշխատութեան բովանդակութիւնը կը համառօտէ այսպէս. «Պատմութիւն Ղեւոնդ երիցու, որ ինչ վասն Տաճկաց եղիցն եւ անցիցն Հայոց ի նոցունց բռնութենէ»* (էջ 7): *Իսկ Կիրակոս Գանձակեցի գիտէ զայն. «Ղեւոնդ երիցու Պատմութիւնն որ զոր ինչ գործեցին Մահմէտ եւ աթոռակալքն նորա ընդ աշխարհս ամենայն, եւ առաւել եւս ընդ ազգս Հայոց»* (էջ 3): *Պատմագիրներու հին ցանկ մը*[12] *կազմուած ԺԷ. դարու վերջին քառորդին, կը յիշէ այս գործը. «Ղեւոնդ պատմագիրք, որ է պատմութիւն անօրէն ազգի չարի»: Յովհ. Կարճաւանեցի Թ.* 1722*ի մէջ կոչած է անգամ մը «Ղեւոնդ պատմագիրք», եւ ուրիշ անգամ «Պատմութիւն Ղեւոնդեայ»: Վարդան Բաղիշեցի կը գրէ. «որ կոչի Ղեւոնդ պատմագիր». այսպէս նաեւ Մխ. Այրիվանեցի եւ Սամուէլ Անեցի*:

*Հնագոյն օրինակի առաջին թուղթը, ինչպէս նկատեցինք, վնասուած էր. եւ կազմողն հարկ տեսած էր վերստին արտագրել: Թէ որքան յաջողած է առեղծուլ փտութենէ անընթեռնլի եղած սկզբնագիրը, դժուարին է հաստատել ստուգութեամբ: Որովհետեւ «մեծ վարդապետ» յորջորջումը անծանօթ է հիներուն, որոնք միաբան «Ղեւոնդ երէց» գիտեն, կը ծնանի արդէն կասկած բնագրի փոփոխութեան մասին: Երկբայելի է նաեւ «Պատմագրութիւն», Ասողիկ եւ Կիրակոս, նաեւ Յովհ. Կարճաւանեցի իւր յիշատակագրութեան մէջ «Պատմութիւն Ղեւոնդ երիցու, Պատմութիւն Ղեւոնդեայ» կ'ընթեռնուն. ուստի արդիւնք է Շմաւոն վարդապետի կամայականութեան, այսպէս կազմած «Ղեւոնդ պատմագիր» յորջորջումէն: Խորագրին մնացած բացատրական տողերու մէջ ալ կը նկատուին կռահումներով ընթերցուածներ, մանր յաւելումներով եւ յապաւումներով: Յեցած Կիրակոսի տուեալներու վրայ կ'առաջարկեմ կարդալ. «Պատմութիւն Ղեւոնդեայ երիցու որ յաղագս երեւելոյն Մահմետի եւ* աթոռակալացն *որ զկնի նորին. եւ թէ որ-*

[12] *Հրատարակուած Յ. Այուբեանէ* Ազդարար 1795, էջ 188—192 (*անկէ արտատպուած՝ Հ. Գ. Գալէմքեարեան՝ Պատմութիւն հայ լրագրութեան,* էջ 206): *Ցանկիս պատահած եմ Էջմիածնի Ձեռագիրներու մէջ երկիցս, ԺԷ. դարու վերջին քառորդին գրուած: Կազմողն ըլլայ թերեւս Վարդան Բաղիշեցի, յԱմիրդոլու վանս, որ առաջին անգամ հոգ տարած է հաւաքել ի մի հայ պատմագիրները եւ նոր օրինակներով տարածել զանոնք*:

պէս կամ որով օրինակաւ տիրեցին տիեզերաց, եւ զինչ ինչ գործեցին ընդ աշխարհս ամենայն, եւ առաւել եւս ընդ ազգս Հայոց[13]»: Այս երկար վերնագիրը, որուն ծանօթ կ'երեւայ Գանձակեցի, կարող է հին ըլլալ. թերեւս գրուած նախնաբար իբրեւ խոստաբանութիւն մը, գլխակարգութիւն մը առաջին գլխոյն կամ յառաջաբանական մուտքին: Բուն վերնագիրը կամ յորջորջումը Ղեւոնդի մատենին պահուած է գրքին վերջը. «Կատարեցաւ Վարդապետութիւն[14] Ղեւոնդի [երիցու] վասն ժամանակագրաց տանս Թորգոմայ՝ ի հրամանէ տեառն Շապհոյ Բագրատունւոյ»: Յայտնի է հին գրչագիրներու սովորութիւնը՝ դնել գրքին վերջը գրութեան խորագիրը:

Շահնազարեան խորագրած է իւր տպագրութիւնը «Արշաւանք Արաբացւոց ի Հայս, արարեալ Ղեւոնդ վարդապետի Հայոց»: Իսկ Եզեանի տպագրութիւնն ունի. «Պատմութիւն Ղեւոնդեայ մեծի վարդապետի»:

Սկսուածքը: — Տր. Միւլլէր նկատելով խորագիրը, որ կը խոստանայ պատմել նախ «յաղագս Մահմետի», կը գրէ. «որովհետեւ մեզի հասած պատմագրութիւնը Մահմետի վրայ բան չի պատմեր, այլ մարգարէին մահուանէն կը սկսի, հարկաւ սկիզբէն մաս մը կորսուած ըլլալու է» (Հանդ. Ամս. 1888, էջ 129): Նոյնպէս նաեւ Ք. Պատկանեան «Թէպէտ եւ նշանակի ի վերնագիրս պատմութեանն Ղեւոնդեայ ե՛ւ յաղագս կենաց եւ գործոց Մահմետի ճառել, բայց Պատմութիւնն նորա սկսանի իսկ եւ իսկ մահուամբ մարգարէին Տաճկաց: Ի բացատրութիւն հակասութեան բանիս համարելի է, թէ կամ թերի է Պատմութիւնն Ղեւոնդեայ ի սկիզբն, կամ վերնագիրն յետոյ ժամանակի յաւելուած է գրչաց» (Պատկանեան՝ էջ 118 = Եզեան, էջ 171): Շահնազարեան կը գրէ «խորագիրս այս թուի յայլմէ հիւսեալ» (Յառաջաբան, էջ 11): Այս կասկածը արդարացի է: Ո՛չ ընծայական, ո՛չ յառաջաբանական մուտք եւ ո՛չ իսկ պատշաճաւոր սկզբնաւորութիւն ունի Մատեանս:

«Նախ եւ առաջին[15] որք եւ Ամիր—ալ—Մումնիք անուանեցան: Զի զքսան ամ կալեալ զիշխանութիւնն Մահմետ՝ մեռանի:..» Այսպիսի մուտքով կը բացուի այժմ Ղեւոնդի պատմութիւնը: Եթէ նա «ի հրամանէ տեառն Շապհոյ Բագրատունւոյ» յորդորուած է ձեռնարկել պատմական աշխատութեանս, պատշաճ էր որ գէթ համառօտախօս ընծայական մը, ակնարկութիւն մը իւր յանձնառութեան մասին, կանխէր զետեղել գործին սկիզբը, ինչպէս, օրինակի համար, Մ. Խորենացի գրուած է նոյնպիսի մը պատշաճեցնել իւր գործին սկիզբը: Որովհետեւ այսպիսի ակնարկութիւն Մեկենասի մասին չկայ գործին ընթացքին, եւ կը պակսի նաեւ աւարտական խօսք մը գրութեան վերջը, Սարգիս գրիչ կամ իր դաղափարօրինակը հաւանօրէն ընծայական մուտքն խեղամուտ եղան թէ Ղեւոնդ Շապուհի հրամանաւ առած է գրիչը ձեռք:

Պակաս է ոչ միայն այս ընծայականը, այլ եւ Մահմետի կեանքի եւ «երեւելոյն» մասին չկայ ակնարկութիւն, զոր անհրաժեշտ էր տալ, իմանալի ընծայելու համար Ամիր—ալ—Մումինիներու ծագումը եւ առհասարակ արաբական արհաւիրքի սկզբնաւորութիւնը հայ ընթերցողներուն կամ իւր Մեկենասին:

Այս կասկածը աւելի կ'ուժեղացնեն մեր մէջ Ասողիկ, Սամուէլ Անեցի եւ Մխիթար Անեցի: Վերջինս քաղուածաբար յառաջ բերելով Ղեւոնդէն տողեր արաբական առաջին արշաւանքներու մասին, կը կցէ անոնց. «Ումար առաջին որ առ զաթոռ սուլտանին, առաջին իշխան եկաց յԻսմայելացւոցն: Քաղըրթն՝ Թ ամ. Եմրան՝ ԺԲ ամ. Մահմէտ՝ Թ ամ. Բուբաքր աներ Մահմետի՝ Բ ամ. Ումար եղեւ սուլտան՝ ամս Ժ: Սա սկսաւ ելանել եւ առ զաշխարհս. ի Քաղըրթայ մինչեւ յելանելն էին ամք ԼԸ, որպէս եւ Ղեւոնդ պատմագիրն զսոյն վկայէ. եւ ասէ թէ յԼԸ ամի իշխանութեան ելին յԱսորիս եւ ի Հրէաստան. եւ ի միւս ամն ելին ի Պարսս եւ ի Հայս, ընկեցին զսուլտանն Պարսից զՅազկերտ Շահրիարեան[16], եւ մտին

[13] Հմմտ. Ագաթ. 10. Հասեալ առ իս հրաման... պատմել նախ զհայրենեացն գործս քաջութեան քաջին Խոսրովու, եւ որ ինչ գործք գործեալք... թէ ուստի եւ կամ զիարդ եւ կամ որպէս. եւ կամ զինչ անցք անցին...»:

[14] Հմմտ. Ագաթ. 12. «Զայս ամենայն մի ըստ միոջէ ոճով պատմեսցուք՝ վարդապետութեամբ (հանդերձ պատմութեամբ) Սրբոյն (Գրիգորի)... ընթերցեալ զԹորգոմայ ազգիս... վասն քոյդ հրամանի, քաջ արանց Տրդատ արքայ Հայոց մեծաց...»:

[15] Կարդա՞լ՝ «Նախ իշխանքն կամ Նախաթոռքն («Աթոռակալքն» Կիր.) որք եւ Ամիր—ալ—Մումնիք» (Emîr-ul-muminîn = Իշխանք հաւատացելոց) անուանեցան:

[16] Ղեւոնդի այժմեան բնագրի մէջ չի յիշուիր Յազկերտի անուան կից «Շահրիարեան». բայց Յազ—

*յաշխարհն Հայոց ընդ կողմն Պարսից»* (էջ 44)։

*Ղեւոնդի քով կը պակսին այժմ Քաղրթի եւ Եմրանի անունները։ Կը յիշուի միայն Մահմետ, որուն իշխանութեան տարիները քան կը նշանակուին, հաշուած մինչեւ փախուստը, այս ինքն Հիճրէի առաջին տարին* (622)․ *ուստի մինչեւ մահն* (632) *կը ստացուի ճշդիւ* 30 *տարի․ այն է՝ Քաղրթ* 9, *Եմրան* 12, *Մահմետ* 9 = 30 (*հմմտ․ եւ Սամ․ Անեցի* 81—82)։ *Բայց Մխիթարի յառաջբերութիւնն այնպէս երկիմաստ ձեւով է, որ դժուարին է յեցած անոր վրայ յանգիլ որոշ եզրակացութեան մը ի նպաստ Ղեւոնդի։ Անեցւոյ քով Քաղրթի եւ Եմրանի յիշատակութիւնը ուրիշ աղբիւր կ'ենթադրէ։ Մեզի ոյժ կու տայ սակայն Ասողիկ* (էջ 119)․ *«Ամիր–ալ–Մումնիքն Տաճկաց եւ որ ինչ յաւուրս նոցա գործեցաւ։ Այլ դոյզն ինչ յառաջ քան զմահն Խոսրովու* († 628), *յութերորդ ամի Հերակլեսի կայսեր* (618) *եւ ի ԿԸ թուականին Հայոց* (619), *երեւեցաւ Մահմետ ի Ջքաստանէ* (= *Տաճկաստանէ*), *որդի Աբդլայի, մարգարէ Տաճկաց*․․․ (*քաղուածներ Սեբէոսէն եւ Ղեւոնդէն*)։ *Իսկ Մահմետ յետ* երկու *ամի իշխանութեան իւրոյ մեռանի ի ԺԱ ամի Հերակլեսի* (621/2)։ *Եւ փոխանորդէ զիշխանութիւնն Աբուբաքր, Օթման եւ Ամր՝ ամս ԼԸ»։ Ասողիկ, որ ունեցած է այս տողերու համար աղբիւր՝ Ղեւոնդի Ա․ գլուխը, գիտէ ոչ միայն Մահմետի Աբդլայի որդի ըլլալը, այլ եւ անոր երեւման թուականը՝ Հերակլի ութերորդ տարին։ Երեւումէն մինչեւ մահը* 2 *տարուան անջրպետ կը դնէ* (*Ղեւոնդ ունի Ի*), *որ պարզապէս ծագած է անկէ, որ սխալ իմացած է Ղեւոնդի տողերը եւ այս հասկացողութեան վրայ հիմնած իր ժամանակագրական հաշիւը։ Այս սխալը այնքան կարեւոր չէ, որքան անոր ծանօթութիւնը Մահմետի անձի շուրջը, կարկառուն սակաւախօս բառերու մէջ ալ, որ հիմնուած կ'երեւայ Ղեւոնդի վրայ։ Թերեւս նաեւ Կիրակոս Գանձակեցի, որ իւր աղբիւրներու մէջ կը յիշէ յանուանէ զՂեւոնդ, Մահմետի անձի եւ գործոց մասին գրած ժամանակ* (էջ 32—34) *աչքի առջեւ ունեցած ըլլայ նաեւ Ղեւոնդի տեղեկութիւնները Մարգարէի մասին։ Թովմայ Արծրունի գիտէ նման Ասողկան՝ Մահմետի հօր անունը* (էջ 99)․ *բայց դժուար է հաստատել թէ Թովմայի ծանօթ եղած ըլլայ Ղեւոնդի մատեանը։*

*Ինչպէս ալ ուզենք մեկնել այս խնդիրը, անվիճելի կը մնայ թէ Ղեւոնդի մատեանը սկիզբէն կորուստ մ'ունեցած է․ այն տեղ կար ընծայական մուտք մը եւ գլուխ մը նուիրուած Մահմետի երեւման։*

*Խնդրոյս ուրիշ լուծում մը տալ փորձեց Հ․ Բ․ Սարգիսեան, որ «Անանունի կամ Կեղծ–Սեբէոսի» կարծուած հանգոյցը լուծել աշխատած ժամանակ այսպիսի միտք մը հրապարակի վրայ դրաւ* (*«Բազմավէպ»*, 1915, էջ 38—39․ *առանց բաժանակից ըլլալու իր տեսութեան՝ կը ներկայացնեմ զայն բառ առ բառ*)․

*«Գրուածիս [Սեբէոսի Արքայացանկի] հեղինակն է, ըստ իս, Ղեւոնդ երէց, եւ ժամանակագրութիւնս [= Արքայացանկը] կը գտնուէր անոր Արաբացւոց Պատմութեան սկիզբը — գուցէ աւելի ընդարձակ ծաւալով։ Այս բանս կը հաստատուի պատմութեան հրատարակութեամբ, ուր ոչ միայն կը պակսի ո՛ր եւ է Յառաջաբան, այլ եւ այն տեղէն կը սկսի Արաբացւոց պատմութիւնը, ուր կ'աւարտի Անանունի [= Սեբէոսի] Բ․ դպրութիւնը։ Դարձեալ պատմութեանս վերջաբան յիշատակարանէն ակն յայտնի կը տեսնուի, թէ այդ գրուածքը բոլորովին տարբեր տիտղոս կը կրէր ի սկզբան իր վրայ — քան ինչ որ տպուած է ի Պետերբուրգ* 1887*ի հրատարակութեան ճակատին վրայ, — այսինքն․ «Պատմութիւն Ղեւոնդի վասն ժամանակագրաց տանս Թորգոմայ»։ Կիրակոս (Յառաջաբան) հետեւեալն եւս կը յաւելցնէ առաջնոյն վրայ․ «Ղեւոնդ Երիցու Պատմութիւն․․․ որ զոր ինչ գործեցին Մահմէտ եւ աթոռակալք նորա ընդ աշխարհս ամենայն եւ առաւել եւս ընդ ազգս Հայոց»։ Արդ՝ պատմական այս երկու տուեալներէն կը հետեւի, որ Ղեւոնդի գրած պատմութիւնն՝ երկու* Դպրութիւններէ *կամ Գիրքերէ բաղկացած էր, որոնցմէ առաջինը — որ կը կրէր վերի մեծատառ վերտառութիւնը [իմա՛ «Պատմութիւն Ղեւոնդի վասն ժամանակագրաց տանս Թորգոմայ»] — բացառապէս Հայոց ժամանակագրական պատմութիւնը կը պարունակէր մինչեւ* 652—663 *թուական փրկչին։ Իսկ Բ․ դպրութիւնը՝ Մահմէտէն սկսեալ (որը սակայն այժմ կը պակսի) եւ յաջորդաց պատմութիւնը կ'ընէր մինչեւ ցամն* 788, *նոտրագրուած*

---

*կերտ սուրգիւ որդի էր Շահրիարի․ հմմտ․* Tabari, von Nöldeke, Leyden 1879, էջ 359—360։

[= Կիրակոսի յառաջ բերած] խորագրի ներքեւ»։

Գլխակարգութիւն մատենին։ — Եզեան հետեւելով իւր օրինակին՝ բաժնած է Ղեւոնդի Պատմութիւնը Ա.—ԽԲ. գլուխներու. Շահնազարեան սակայն չէ նկատած իւր Ձեռագրին մէջ նման բաժանումներ. եւ հարկադրուած է ինքնակամ ըստ քմաց գլխակարգել (Ա—Ը)։ Պէտք է հանգոյցիս լուծման համար ձեռք առնել հնագոյն օրինակը. ես չեմ յիշեր այժմ թէ ինչպէս է հոն հատուածներու բաժանումը։ Բայց կ՚երեւայ թէ անկէ ծագած միւս օրինակները միօրինակ չեն պահպանած սկզբնական բաժանումները։ Այսպէս Վենետիկի Ա. օրինակը Եզեանի հրատարակութեան Դ. գլուխն ունի Գ., եւ Է. գլուխն՝ Զ (տե՛ս Նոր Բառգիրք Հայկազեան լեզուի. Երաստ, զոմ բառերու տակ). ուստի գլխով մը ետ կը մնայ։

Թէ Ղեւոնդի մատեանը նոյն ինքն հեղինակէն ստորաբաժանուած էր հատուածներու, յատուկ խորագրութիւններով, զգալի է, թէեւ շատ տեղ կրճատուած է այժմ։ Կը յիշեմ «վասն Աշոտի իշխանութեանն եւ այրեցածին Հռոմի եւ մահուանն Աշոտի» (էջ 16, գլ. Ե)։ «Վասն Մօրին կռուին» (էջ 19, գլ. Զ)։ Այսպիսի խորագրութիւն մը կ՚ենթադրէ նաեւ գլ. Դ, էջ 12. զոր կը կարդամ լրացնելով. Յաղագս իշխանութեանն Մուաւիայ եւ եթէ զիարդ յաւուրս նորա էր իշխանն Գրիգոր. եւ որ ինչ անցք անցին ընդ աշխարհս Հայոց. եւ մահուան իշխանացն»։

Ամբողջութիւնը։ — Տեսանք թէ սկզբնաւորութիւնը տուժած է իւր ամբողջութենէն. Ճշդիւ չեն պահուած գլուխներու բաժանումներն եւ խորագրութիւնները։ Կը սպասուէր որ էջ 12, Գ. եւ Դ. գլուխներու միջեւ խօսք ըլլար Ալի ամիրապետի եւ Մուաւիայի մէջ եղած խնդիրներու մասին։ Թղթի մը կամ տողերու անկում տեղի ունեցած կ՚երեւայ էջ 14, տ. 15, ուր ընդհատում մը կրած է ամիրապետներու ուղիղ յաջորդութիւնը. դուրս մնացած են Մուաւիա Բ. (683) եւ Մրուան Ա. (683—685)։ Այս անունները կը պակսին նաեւ Թովմա Արծրունւոյ (էջ 104) եւ Ասողիկի (էջ 122) ցանկերու մէջ։ Թերեւս Ղեւոնդի աղբիւրը թերութիւն ունեցած է հոս։ Պատմական մասը ուրիշ կողմանէ զգալի թերոյթ մը ցոյց չի տար։ Այս ծաւալով գիտէ զայն նաեւ Ասողիկ (էջ 135)։

Թերեւս ընդմիջարկութիւն ըլլան ԺԳ.—ԺԵ. գլուխները Ղեւոնդի մատենին մէջ։ Այս կէտին պիտի անդրադառնանք յետոյ։

Վերջաբանութիւնը։ — Այն յանկարծական վերջաւորութիւնը որով կ՚աւարտի Պատմութիւնը, բոլորովին անսպասելի է Ղեւոնդի գրչի տակ։ Ձեռագիրները յայտնապէս կը գրեն թէ «կատարեցաւ»։ Բայց ես չեմ կրնար հաշտուիլ այն մտքի հետ, թէ մեր խորհող եւ զգածուող, խրատաբանող եւ ողբացող պատմիչը այսպէս յանակնկալս բաժնուէր իւր ունկնդիրներէն, առանց վերջին հրաժեշտի խօսք մ՚ուղղելու անոնց։ Ինձ կը թուի թէ Ղեւոնդ գրած ըլլալու էր հուսկ բան մը, որ թէեւ չի տեսնուիր այսօր իր Պատմութեան օրինակներու մէջ, բայց կար այն երբեմն սկզբնագրին մէջ։ Ինձ կը թուի թէ այդ վերջաբանականը հասած ալ է մեզի, բայց փրցուած սկզնագրէն, ենթարկուած փոփոխութեան եւ զետեղուած ուրիշ մեծ գործի մը վերջը, որուն հեղինակի համբաւը թոյլ չէ տուած մինչեւ օրս անդրադառնալ գրուածքին իսկական պատճառին։

Ինձի կ՚երեւայ թէ այն Ողբը, որ կցուած է Մովսէս Խորենացւոյ Հայոց պատմութեան, իւր նախնական ձեւի մէջ վերջաբանականն էր Ղեւոնդի Պատմութեան։

Այս կարեւոր խնդրոյն քննութիւնը պիտի ունենայ իր պատշաճ տեղը մեր ուսումնասիրութեան մէջ։

## 4. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԻՒՆՆԵՐ, ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆՆԵՐ, ՔՆՆՈՒԹԻՒՆՆԵՐ

Կ՚ամփոփեմ այս տեղ Ղեւոնդի մատենին շուրջը հրատարակուած գրականութիւնը։

1. Արշաւանք Արաբաց ի Հայս. արարեալ Ղեւոնդ վարդապետի Հայոց։ Ի լոյս ընծայեաց հանդերձ ծանօթութեամբք Կարապետ Վ. Շահնազարեանց։ Փարիզ 1857, $8^0$, էջք 240։ (Շար հայ պատմագրաց)։

Այս Ա. տպագրութեան առթիւ քանի մը խօսք H. Petermann, Zeitschrift der deutschen morgenländischen Gesellschaft, 1861, էջ 397—398։

2. Պատմութիւն Ղեւոնդեայ մեծի վարդապետի Հայոց. Բ. տպ. (հրատարակութիւն Կ. Եզեանի). Ս. Պետերբուրգ 1887,

$8^0$, էջք ԶԴ + 201: (էջ 171—193 ծանօթութիւններ եւ էջ Է—ՀԸ դրուագ մը Մահմետի եւ Ամիրապետներու վրայ):

Բ. տպագրութեան առթիւ՝ Fr. Müller, Wiener Zeitschrift für die Kunde des Morgenlandes. 2 (1888), էջ 175—178 (= Թարգմ. Հանդէս Ամսօրեայ 1888, էջ 128—129. Արձագանք 1888, էջ 326—327):

3. Histoire des guerres et des conquêtes des Arabes en Arménie par l'éminent Ghévond, vardabed arménien, écrivain du VIII^e siècle. Traduite par Garabed V. Chahnazarian et enrichie de notes nombreuses. Paris 1856, $8^0$, XV, 164 pp. Շահնազարեան առաջին անգամ այս թարգմանութեամբ ծանօթացուց Ղեւոնդի մատեանը գիտական աշխարհի. հայերէն բնագիրը տարի մը յետոյ միայն ելաւ հրապարակ: Ինչպէս Պատկանեան նկատած է իր ռուսերէն թարգմանութեան յառաջաբանին (էջ V—VI) եւ ծանօթութիւններու մէջ, շատ անբաւական է Շահնազարեանի այս թարգմանութիւնը, ուր թարգմանիչը առանց կապուելու բնագրին՝ ինքնակամ ազատութիւններ շնորհած է իր գրչին եւ անճիշդ մեկնութիւններով փորձած է լուսաբանել բնագրին մթութիւնները: Շատ աւելի խնամով կատարուած է ռուսերէն թարգմանութիւնը Ք. Պատկանեանի ձեռքով: — Գաղղիերէն թարգմանութեան առթիւ J. Mohlի տուած կարճառօտ զեկուցումը տե՛ս բնագրով եւ հայերէն թարգմանութեամբ Մասեաց Աղաւնի, 1856, էջ 243—244:

4. Исторія Халифовъ вардапета Гевонда, писателя VIII вѣка. Переводъ съ армянскаго (переводчикъ: К. Патканьянъ) Санктпетербургъ, 1862. $8^0$, XI, 168 стр. (էջ 118—165 ծանօթութիւններ):

Քննութիւններ Ղեւոնդի անձի եւ գրու-եան մասին:

1. Ernestus Filler, Quaestiones de Leontii armenii historia. Lipisiae 1903, $8^0$, 38 pp. (Diss.): Նկատի կ՚առնէ յատկապէս Ղեւոնդի ժամանակագրութիւնը:

2. Զարբհանալեան Հ. Գ., Պատմութիւն Հայկական հին դպրութեան. Բ. տպ. 1897, էջ 478—480:

3. Հ. Ղ. Ալիշան, Հայապատում, Վենետիկ 1901, էջ 76—77. նոյնը՝ արտատպուած՝ Հ. Ա. Ղազիկեան՝ Հայկական նոր Մատենագիտութիւն, Ա. Վենետիկ 1909, էջ 1652—1654. տե՛ս եւ էջ 1649—1652 քաղուածքներ Ա. եւ Բ. տպագրութիւններու յառաջաբաններէն):

4. Hagop Thopdschian, Die inneren Zustände von Armenien unter Ašot I. Halle 1904, էջ 4.

Օգնական աղբիւրներ: — 1. M. Ghazarian, Armenien unter der arabischen Herrschaft bis zur Entstehung des Bagratidenreiches. Straßburg 1903, $8^0$, 87 SS. (Diss.). Նախ լոյս տեսած՝ Zeitschrift für armenische Philologie, II (1903).

2. Hagop Thopdschian, Armenien vor und während der Araberzeit. ZAPh. II, 1903, S. 50—72.

3. J. Laurent, L'Arménie entre Byzance et l'Islam depuis la conquête arabe jusqu'en 886. Paris 1919, $8^0$, pp. VIII + 398.

4. J. Marquart, Osteuropäische und ostasiatische Streifzüge. Leipzig 1903, S. 436—465 = Հայ Բագրատունեաց ճիւղագրութիւնը ծանօթութիւններով. գրեց Պրոֆ. Դկտ. Յ. Մարկուարտ, գերմաներէնէ թարգմանեց Հ. Մ. Հապոզեան, Վիեննա 1913, $8^0$, ԺԵ, էջ 68:

5. Р. Р. Фасмер, Хронология наместников Армении при первых Аббасидах. Записки коллегии востоковедов при Азиатском музее Российской Академии наук. Том I (Ленинград 1925), стр. 381—400 = Ռ. Ֆասմէր՝ Հայաստանի ոստիկաններու ժամանակագրութիւնն առաջին Աբբասեանց օրով. թարգմ. Հ. Վ. Ինգլիզեան: Հանդէս Ամսօրեայ, 1928, էջ 44—50, 157—168, 258—270:

(Շարունակելի:) Հ. Ն. ԱԿԻՆԵԱՆ



# ՑՈՒՑԱԿ ՀԱՅԵՐԷՆ ՁԵՌԱԳՐԱՑ Ս. ՆՇԱՆԻ ՎԱՆՈՒՑ Ի ՍԵԲԱՍՏԻԱ

—

(Շարունակութիւն:)

## 155.

## ՏՕՆԱԿԱՆ

?

*ՄԵԾՈՒԹԻՒՆ՝ 23×16×10: — ԳՐՈՒԹԻՒՆ՝ միասիւն: — ՆԻՒԹ՝ թուղթ: — ԹՈՒՂԹՔ՝ 438 (= 876 էջ): — ՏՈՂՔ՝ 28: — ԿԱԶՄ՝ կաշեփայտ: — ՀԱՆԳԱՄԱՆՔ՝ Լաւ: — ԳԻՐ՝ բոլորգիր: — ՎԵՐՆԱԳԻՐՔ՝ կարմիր: — ԳՐԻՉ՝ անյայտ:*

# ՂԵՒՈՆԴ ԵՐԷՑ ՊԱՏՄԱԳԻՐ

## ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ-ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ ՄԸ

*(Շարունակութիւն:)*

### 4· ՊԱՏՄՈՒԹԻՒՆԸ

Բովանդակութիւնը: *Թէպէտ մատենին վերջը «Վարդապետութիւն վասն ժամանակագրոց տանս Թորգոմայ» կը ներկայացուի Ղեւոնդի աշխատութիւնը, որպէս թէ նա Հայոց ժամանակագրական պատմութիւնը նկարագրած ըլլայ սոյն մատենիս մէջ, բայց յիրականին կը գտնենք մենք հոն ժամանակագիրք մը տանն Իսմայէլի· այն է ժամանակագրութիւն մը արաբական ամիրապետներու յաջորդութեան եւ անոնց օրով նուաճուած երկիրներու մէջ տեղի ունեցած դիպուածներու: Այս տեսակէտով շատ ուղիղ պատկերացուցած է անոր բովանդակութիւնը Կիրակոս Գանձակեցի· «Պատմութիւն զոր ինչ գործեցին Մահմետ եւ աթոռակալքն նորա ընդ աշխարհս ամենայն, եւ առաւել եւս ընդ ազգս Հայոց»: Կարելի է նկատել նաեւ «Պատմութիւն վարուց եւ գործոց իշխանացն Իսմայէլի», որովհետեւ ամբողջ ժամանակագիրքը կ'ընթանայ ամիրապետներու յաջորդութեան կարգով եւ անոնց արիական եւ դժխեմ գործերու եւ ապարասան վարքի նկարագրութեամբ· Ղեւոնդ երեք անգամ գործածած է բացատրութիւնս· «եւ այս վարք նորա»* (*էջ* 14, 31, 40) *եւ մի անգամ Աբդլմելիքի համար գրած է· «կալեալ զիշխանութիւնն այսպիսի վարուք՝ վախճանէր»* (31):

*Ղեւոնդի Պատմութիւնը* 150 *տարուան շրջան* (640—789) *կ'ընդգրկէ: Կարճառօտ ակնարկով մը միայն կը բաւականանայ տալ արաբական շարժման սկիզբը, որ իւր մանրապատում պատմիչն ունի յանձին Սեբէոսի: Այս շրջանին, զոր կ'անուանէ Ամիր ալ Մումինիներու հարստութիւն, անապատի որդիները կ'ապրին ներքին յեղափոխութիւն մը· նոր արթնցած ժողովուրդը թարմ ուժով դուրս կ'ելլէ աշխարհներ նուաճելու· սահմանակից հզօր պետութիւնները՝ Սասանականն եւ Բիւզանդականը դարաւոր մրցութեան մէջ տկարացած եւ կազմալուծուած, չեն կարող ընդդիմանալ նոր ոսոխին· եւ կարճ ժամանակամիջոցի մէջ Պարսկաստանն եւ Պաղեստինը, Եգիպտոսն եւ բովանդակ Ափրիկէ կը խոնարհին արաբական լուծին տակ: Իսմայէլեան բանակին առաջապահ զօրախումբերը հիւսիսէն եւ հարաւէն կը շօշափեն նաեւ հայկական սահմանները եւ կը փորձեն աւելի աւարառութեան քան նուաճողական նպատակներով արշաւել մինչեւ երկրին սիրտը· Դուին եւ Արծափք կ'իյնան· թշնամին մեծ աւարով կը քաշուի ետ:*

*Այս նախադռնէն կը մտնէ Ղեւոնդ իւր Պատմութեան իսկական շրջանակը, ուր ընդառաջ կ'ելլէ արաբական աշխարհանուաճութեան պատմութեան ամէնէն հզօր դէմքը՝ Մուաւիա Ա·, որուն յառաջխաղաց բանակը միջամուխ է արդէն Հայաստանի սահմանները եւ ղբաղած է երկրին նուաճմամբ: Այսուհետեւ Ղեւոնդ յանձնած իւր նաւն ամիրապետներու կեանքի հոսանքին կը նկրտի յառաջ՝ երբեմն արագ եւ երբեմն ծանր նաւարկութեամբ: Ճանապարհին կը յածէ նա իւր հեռադիտակ աչքերն աջ եւ ձախ, կը զննէ, կը հետազօտէ, կ'ընդունի տպաւորութիւններ, եւ կը դրոշմէ զանոնք իւր յուշատետրին մէջ:* 789*ին կը կոխէ ցամաք· նա հասած է արդէն իւր նպատակակէտին: Արաբական ընդարձականիստ աշխարհին տէրն է Ահարոն (Հարուն էլ-Ռաշիդ)· Հայաստան կը հեծէ անոր անհանդուրժելի բռնութիւններու եւ կեղեքումներու տակ· ուժասպառ է ժողովուրդը· մինչ մէկ մասը խումբ խումբ կը գաղթէ դէպի բիւզանդական հողեր, միւս մասը կ'ապրի իւր սորուկի կեանքը, Ստեփանոս Կաթողիկոսի հովուութեան տակ, որ նոր բարձրացած է անարգուած գահին վրայ: Այս տեղ կը թողու զմեզ Ղեւոնդ:*

*Ամբողջ արաբական աշխարհն առարկայ է իր զննութեան· ամփոփ նկարագրութեամբ պատկերացուցած է շարժառիթը, սկիզբը եւ կատարածը այն ամէն կռիւներուն, որոնք մղուեցան յընթացս* 150 *տարիներու, մերձաւոր եւ հեռաւոր սահմաններու, յատկապէս Սասանեան եւ Բիւզանդական սահմանագլուխներու վրայ, ներքին եւ արտաքին թշնամիներու դէմ· նկատի առնուած են մինչեւ անգամ Հիւսիսային Կովկասի եւ Ճենական սահմաններու վրայ տեղի ունեցած դէպքերը: Բայց որովհետեւ իր տեսութեան աւելի մերձ եղած է Հայաստանը, առաւելապէս այս երկրի իրադարձութիւնները գրաւած են իր ուշադրութիւնը, եւ*

*այն յատկապէս միջազգային քաղաքական առնչութեան մէջ: Թորգոմայ տան ներքին խնդիրներն, առանին վէճերն բնաւ կամ դոյզն չափով միայն հետաքրքրած են զինքը: Իր մատենին նշանակալից մէկ մասը լեցուցած է Լեւոն Գ. Խաւրացւոյ պատասխանը Օմար Բ.ի թղթին, որ կրօնական-ջատագովական գրութիւն մըն է եւ կը ձգտի հերքել մահմեդական աշխարհահայեացքները քրիստոնէութեան մասին (տե՛ս այս մասին վարը):*

Գրութեան ժամանակը: *Ղեւոնդ իւր Պատմութիւնը գրած է երկու հանգոյցով: Առաջին ձեռնարկութեամբ գրի առած է նա անցեալ շրջանի պատմութիւնը մինչեւ իւր օրերը. այն է մինչեւ* 774: *Այս մասը կը կազմեն այժմ Ա—ԼԳ գլուխները (էջ* 1—137): *Պատմագիրը համառօտախօս, բայց զգայուն տողերով նկարագրելէ յետոյ երկրին եւ ժողովրդեան ծանր եւ յուսահատական վիճակը Աբդլա Բ.ի* (754—775) *օրով յատկապէս Կահաթբայի որդւոյն՝ Հասանի* (770—774) *կեղեքումները, կը վերջացնէ իւր խօսքը. «զոր պատմել ոչ կարեմք զաղետիցն պատմութիւն»* (137):

*Թէ լեզուն եւ թէ պատմելու ոճը զգալի կերպով կը փոխուին յաջորդ մասին մէջ, ուր պատմիչը աւելի հասուն տարիքի մէջ կ'երեւայ եւ դէպքերուն ի մերձուստ ժամանակակից եւ հանդիսատես: Մինչ առաջին մասին մէջ կը նկարագրէր երկրին տնտեսապէս անհանդուրժելի, յուսահատական դրութիւնը, զոր խօսքով պատկերացնել անհնարին կը գտնէր. երկրորդ մասին մէջ կարող է արդէն ներկայացնել նախարարակոյտ եւ աշխարհախումբ ամբոխին ճգնաժամային փորձը, լծընկէց ընդվզումով բռունցքին հետ բռունցքով խօսիլ: Օր օրին չի տար դէպքերուն տարեգրութիւնը. նա գիտէ արդէն թէ «ձեռնամուխ եղեն յիրս զոր ոչ կարէին վճարել»* (137). *ծանօթ է ապստամբութեան հետեւանքին, որ ծանր արժեց: Այս մասը կը սկսի ԼԴ. գլխով, եւ սկզբնաւորութիւնն ինքնին ցոյց կու տայ թէ նոր է պատմուածքը, թէեւ նիւթը շարունակութիւնն է նախորդին. «Յայսմ վայրի ճառեցից զվայրենամիտ ազգին Իսմայէլի զխստասիրտ դառնութիւնն ի գլուխ ելեալ»... որ կը յիշեցնէ մեզի Սեբէոսի Գ. դպրութեան սկզբնաւորութիւնը. «Զաբրահամեանն ճառեցից զզաւակէ...» (Սեբ.* 104):

*Ա. մասը գրած է Ղեւոնդ ամենայն հաւանականութեամբ* 773/74*ին, ապստամբութենէն յառաջ: Թէեւ Աբդլայի իշխանութեան* 22 *տարիներն ծանօթ են իրեն (էջ* 129), *բայց այն տեւողութիւնը կարող էր նաեւ յետոյ աւելցուած ըլլալ, վերջին խմբագրութեան ժամանակ: Մենք յետոյ պիտի տեսնենք թէ այդ խմբագրութեան շնորհիւ բաժնուած հեռացուած է մատենիս վերջաւորութենէն Ողբը, որ նախնաբար այս տեղ զետեղուած էր:*

*Բ. մասի գրութեան ժամանակի համար ունինք հետեւեալ կռուանները: Տեսանք վերագոյն, որ Ղեւոնդ ականատես էր Արծրունի եղբայրներու նահատակութեան* (6 *Յունուար* 786) *եւ չէր լսած Մերուժան Արծրունւոյ մահը: Ղեւոնդ ծանօթ է Սուլէյման ոստիկանին եւ անոր Իբնդոկէ զօրծակալին չարաչուք արարքներուն, որոնք տեղի ունեցան* 788—789*ին. այս միջոցին բարձրացաւ կաթողիկոսական գահին վրայ Ստեփանոս, որ երկամեայ ժամանակ մը միայն կառավարեց եւ մեռաւ* (790/91): 686 *Սեպտ.* 15*ին Մուսէին յաջորդեց իր եղբայրը՝ Հարուն էլ-Ռաշիդ, որ իշխեց մինչեւ* 809: *Պատմիչը որ գիտէ անոր «ագահ եւ արծաթասէր» բարքը, կ'անգիտանայ անոր իշխանութեան տեւողութեան տարիները. ուստի նա աւարտած է իւր Պատմութիւնը* 809*էն յառաջ: Որովհետեւ Ղեւոնդ հայրապետական աթոռին վրայ տակաւին կենդանի կը ճանչնայ զՍտեփանոս, հարկ է այս անազանագոյն եզրը աւելի ամփոփել եւ ըսել, թէ Ղեւոնդ աւարտած է իւր Պատմութիւնը ճիշդ* 790*ին. այս թուականէն ոչ յառաջ եւ ոչ յետոյ:*

## 5. ԱՂԲԻՒՐՆԵՐԸ

*Ինչպէս կ'երեւայ, Պատմութեան համար ձեռքի տակ կարեւոր գրաւոր աղբիւր չէ ունեցած Ղեւոնդ: Նա գրած է իւր Պատմութիւնը յեցած աւանդութիւններու վրայ, զորոնք լսած է «ի ճշմարտախօս արանց»* (*էջ* 30), *այս ինքն ականատեսներէ եւ մերձաւոր ժամանակակիցներէ: Այդպիսի անգիր աղբիւրներ կ'ակնարկէ Ղեւոնդ, երբ կը գրէ. «ասի, ասեն, լուաք, ուսաք» եւ այլն:*

*Գրաւոր աղբիւր կը տեսնուին իր ձեռքին տակ հետեւեալները, որոնք նպաստած են աւելի իր մտաւոր զարգացման, քան հայթհայթած են իրեն պատմական նիւթ:*

1· Ս· Գիրքը: Ղեւոնդ անգիր ուսած է Աստուածաշունչը իր հին եւ նոր մատեաններով: Ոչ միայն իւր պատմելու ոճը, արտայայտուելու եղանակը կը կրէ իր վրայ Աստուածաշունչի կնիքը, այլ եւ ամբողջ մատեանը ողողուած է Աստուածաշունչի կազդուրիչ հոսանքէն: Ամբողջական մտքեր հիւսուած են հոն մարգարէներու ներշնչման տակ. նոյն իսկ՝ գիտութեամբ կամ անգիտութեամբ, փոխ առնուած են բառեր եւ նախադասութիւններ: Հզօր ազդեցութիւն գործած են իր վրայ մանաւորապէս Մակաբայեցւոց գրքերը իրենց հրապուրիչ պատմական ոճովը: Եթէ ուզենք օրինակներով հաստատել մեր խօսքերը, հարկ պիտի լինի արտագրել Ղեւոնդի մատեանին չական մեծ մասը: Անթիւ տեղիքներէն քանի մը նմոյշ բաւական ըլլայ, նկատելու համար այս ազդեցութեան չափը: «Նա էր այր ժանտ եւ զօռ պատերազմաւ» (տպ· պատերազմող), էջ 15 = Բ· Թգ· Ը· 10· «այր զօռ պատերազմաւ»· այս համեմատութեամբ կը գտնէ Ձեռագրին ընթերցուածը իւր հարազատութիւնը. «Զյափշտակող բարս ագահութեան իբրեւ զվարմ ձգեալ ի տամբիոն՝ որսայր զկենաց մարդկան զհետեւանս», էջ 128 = Ովս· Ե· 1· «իբրեւ զվարմ ձգեալ ի գլուխ գահաւանդի (ի լուսանցս ի վերայ գահաւանդի նշանակի՝ տաբիրոն», իմա՝ ՚ Ἰταβύριον), զոր որսորդք յորս հաստատեցին»:

2· Ագաթանգեղոս: Ս· Գրքէն յետոյ Ղեւոնդի սիրելի մատեանն եղած է Ագաթանգեղոսը, զոր յաճախ ընթերցած է, անոր հարուստ բառամթերքը իւրացուցած, անոնցմով արտայայտութիւն տուած իւր մտածմունքներուն: Մինչ Սեբէոս հետեւած է Բիւզանդի, Ղեւոնդ օրինակ առած է իրեն Ագաթանգեղոսը: Յառաջ կը բերեմ համեմատութեան համար.

Քանզի յոյժ ստիպէր զնա մոլորութիւն այսոյն, ուս դնել եւ համբառնալ (հարկանել) ընդ վիմին հաստատնոյ. վիմին ինչ ոչ կարէր ստնանել· բայց ինքն առ վիմին խորտակեցաւ· էջ 100:

Զթագաւորն հպարտացեալ ամբարհաւաճեցուցանէր որոգայթադիր թշնամին ...ուս եդեալ համբառնայր հարկանել ընդ վիմին հաստատնոյ, ընդ հաւատոյն եկեղեցւոյ· վիմին ինչ ոչ ստնանել կարացեալ՝ ինքն առ վիմին խորտակեցաւ: Ագաթ· 80—81:

Նոյն տողերու ազդեցութեան տակ է նաեւ էջ 109· «զայրացեալ գազանանայր համբառնայր մարտնչել ընդ հաստատուն վիմին»: «Ըստ փարաւոնեան զօրուն զծովապատիժ բարկութիւն կրեաց»· էջ 110 = Ագաթ· 155· «հեղասաստ ծովապատիժ բարկութեամբ զառ ի ներքոյս երկնից ջնջեալ»: «Զանց արարեալ զբազում օթեւանօք եւ հասանէր ի քաղաքն Խառան· էջ 28 = Ագաթ· 460· զանց առնէր զբազում օթեւանօք մեծաւ ուրախութեամբ... մինչ երթային հասանէին յաշխարհն Իտալացւոց»: «Յունակորոյս եղելոցն ի կենաց աշխարհի»· 151 = Ագաթ· 154· «յունակորոյսք ի կենաց անտի Աստուծոյ»: «Զբանս խրատու օգտութեանն յընչաց քերէին»· 144· = Ագաթ· 288· «որք իշխեցին յընչաց քերել եւ արհամարհել զընտրեալն»: «Դէմ եդեալ տարադէմ գնացին փախստեայ յաշխարհն Յունաց»· 168 = Ագաթ· 84· «դէմ եդեալ տարադէմ գնացեալ փախստեայ լինէին»: «Եւ յանչափ դղրդմանէ քարանցն բախեալ երիվարացն՝ զբազումս առաթուր հարեալ սատակէին· 140 = Ագաթ· 97· անգուշեալ բազում երիվարք հեծելոց յահէ անտի՝ զբազումս ընկեցեալ եւ զբազումս առաթուր հարեալ սատակէին»· հմմտ· եւ Գ· Մակաբ· Զ· 15· Եւ գազանքն... զբազումս ի նոցանէ առաթուր հարեալ անդէն առ ոտս իւրեանց սատակէին»: «Այլք ի փախուստ դարձեալ՝ հազիւ ուրեմն զապրուստ անձանց գտանէին· 147 = Ագաթ· 3· ջանան զապրուստ անձանց փրկութեան գտանել: «Անցուցանէր շուրջ զպարսպովն պարկէնս փոսից· 36· պարկենաւ փոսիւ շրջապատեալ· 103 = Ագաթ· 111· մօտ ի պարկէն փոսին որ շուրջ գայր զքաղաքաւն. եւ այլն:

3· Վկայաբանական գրուածներ: Համազասպ եւ Սահակ Արծրունի եղբայրներու վկայաբանութիւնն յօրինուած է նմանութեամբ հին վկայաբանութիւններու· հմմտ· «Գործեցաւ այս յիշխանութեան Մուսէի»... էջ 165 եւն:

4· Ձեռքի տակ ունեցած է մեկնողական եւ ճառական գրուածքներ· ա· Ոսկեբերանի Մեկնութիւնն Մատթէի· «Հրաման ետ զօրաց իւրոց կազմել սայլս վաշիւք դիպակօք... ելին եւ որք ընդ վաշիւքն թագուցեալ էին»· 39—40 = Ոսկ· Մեկն· Մատթ· Գ· էջ 65· տես զիարդ վաշիւքն եւ սայլիւքն Սկիւթացւոց աշխարհին կեանքն վճարին»:

բ· Փիլոնի գրութիւնները· Հմմտ· Բազմաբեղուն չարութիւն, էջ 48 = Փիլոն· բազմաբեղուն է չարութիւն… սակաւաւոր է բարին, իսկ չարն բազմաբեղուն»: «Այր գեղադէշ երեսօք, էջ 128, 151 = Փիլոն· ծառայք եւ աղախնայք գեղեցկակերպք եւ յոյժ գեղադէշք»: «Արշութեամբ անարգել գինութեամբ իգախազութեան· 115 = Փիլոն· «տանջանք իգախազութեան՝ արգելաւորութիւն»: «Ողջունէր զամենեսեան սիրական համբուրիւ աջոյն· 28 = Փիլ· Լիւս· իբր սիրական համբիւրիւք ողջունի՝ զմիմեամբք պատառի որպէս զծիթենեօք բաղեղն»: գ· Գրիգոր Նիւսացւոյ Մեկնութիւնն Երգոց Երգոյն· «Որ կենացն է չտեմարանապետ Աստուած· էջ 29 = Նիւս· «որ չտեմարանապետն է հոգւոյ, ստիպեաց զհոգի իմ առ ինքն»: դ· Իգնատիոսի թղթերը· «Ջապիրատութիւն ի բարձունս խորհեցար զՔրիստոսէ… եւ զվերընկալ աթոռոյ նորա· էջ 107 = Իգն· Թուղթ ԺԲ· «ազդեաց ինձ (տէր) զՈւրիոն զվերընկալ աթոռոյն իմոյ»: ե· Դաւիթ Հարքացւոյ Որ յիմաստասիրական եւ յիմաստասիրելի հարցուածս· «Քանզի ախտացեալք մտօք եւ զգայութեամբ եւ սրտիւ՝ կատարէին զերկունս մահու մտացն եւ զգայութեանց զչարութեանցն առատագոյն ծնունդս՝ զապանութիւն, զչարութիւն (իմա՝ ըստ Ասողկան 131 զցանկութիւն) ընչից եւ զհեշտ ցանկութիւնն«· 118 = Դաւիթ· «սստ բաժանի (չարն) ի զոյգս զառնաբեր ստոոց՝ ի ցանկութիւն ընչից եւ ի հեշտ ցանկութիւն· եւ երկոքին սոքա զմարդատեցութիւն կազմեն»· էջ 16, հրտ· Գ· Տէր–Մկրտչեանի, Վաղարշապատ 1903: զ· Գրիգոր Նազիանզացւոյ գրութիւնները· «Զօրացաւ մէգ փոշէզգած ի վերայ նոցա· 104 = Աստուածաբան ի Մկրտ· փոխանակ ախորժելի հոտոյն փոշէզգածք լինիցիմք»: Եւ այլն:

5· Ծանօթ է իրեն Ստոյն Մովսէսի Խորենացւոյ Աշխարհագրութիւնը· «Երթեալ յանդիման լինէին միմեանց ի սահմանս Ապառաժն Արաբիոյ»· 5 = Խոր· Աշխարհագր· 611—612· Ապառաժ Արաբիա յելից կալով Եգիպտոսի… Երջանիկն Արաբիա յերի կալով անապատ եւ ապառաժ Արաբիոյ»: Հմմտ· եւ էջ 132 = Աշխ· 605—606:

6· Սեբիոսի Պատմութիւնն ի Հերակղ: Թէեւ Filler (էջ 15) համոզուած է, որ այս մատեանը ծանօթ չէ եղած Ղեւոնդի, բայց ես Թոփճեանի (էջ 4) հետ համամիտ եմ հաստատելու թէ մեր հեղինակը կարդացած է Սեբիոսի Պատմագրութիւնն եւ օգտուած անկէ: Այս մտքին աւելի կը փարիմ այնու, որ Ղեւոնդի աշխատութիւնը շարունակութիւն մը կը հանդիսանայ Սեբիոսի գործին: Կան չօշափելի կէտեր ալ, որոնց վրայ կ'ուզեմ ծանրանալ:

Ղեւոնդ կը գրէ (էջ Յ)· «Մինչդեռ էր կենդանի աստուածապսակեալն Հերակղէս՝ ոչ կարացին (Իսմայելացիք) սփռել զասպատակս իւրեանց ի վերայ Հրէաստանի, զի համբաւ քաջութեան նորա սփռեալ էր եւ զարհուրեցուցանէր զնոսա: Եւ նորա տիրեալ ունէր զիշխանութիւնն Հրէաստանի եւ Ասորեստանի մինչեւ ի վախճան կենաց իւրոց»: Այս տողերը գրուած են Սեբիոսի Բ· Դպրութեան ազդեցութեան տակ· ուր Սեբիոս դիտմամբ լռած էր խօսիլ Հերակղի օրով սկիզբ եղած արաբական արշաւանքներու մասին, որովհետեւ մտադիր էր ապա Գ· Դպրութեան մէջ միահաղոյն եւ ոճով պատմել Մահմետի երեւումն եւ անոր յաջորդներու ասպատակութիւնները, կից 641—660 դէպքերու: Յայտնի է որ Արաբները 636—641 տարիներուն նուաճած էին բովանդակ Պաղեստինը, Միջագետքի մէկ մասն եւ Ափրիկէ:

Սեբիոսի ազդեցութեան տակ է Ղեւոնդ նաեւ յաջորդ էջերու մէջ, ուր կը խօսի Ամիր ալ–Մումինիներու նուաճումներու վրայ (էջ 4—7): Համեմատութեան համար կը բերեմ հետեւեալ հատուածները·

| Ղեւոնդ, 4: | Սեբիոս, էջ 104—105: |
| --- | --- |
| Զի զպատուէր օրինադրին իւրեանց ունէին օժանդակ, …թէ ելէք ի վերայ աշխարհաց, նուաճեցէք զնոսա ընդ ձեռամբ ձերով, զի մեզ, ասէ, տուեալ է ի վայելս զպարարտութիւն երկրի· …որոց եւ սադրիչք եղեն եւ առաջնորդք Հրեայք, որք երթեալ ի բանակս Մադիամու ասէին ցնոսա· Աբրահամու, ասեն, խոստացաւ Աստուած տալ զբնակիչս երկրի ի ծառայութիւն· եւ մեք եմք ժառանգք եւ որդիք նահապետին… այլ եւ դուք էք զաւակք Աբրահամու | Արդ օրինադրէր նոցա (տպ· օրինադրէ զնոսա) Մահմէտ՝ …եւ ասէր· Երդմամբ խոստացաւ Աստուած զերկիրն զայն Աբրահամու եւ զաւակի նորա… Իսկ արդ դուք էք որդիք Աբրահամու… երթայք կալարուք զերկիրն ձեր՝ զոր ետ Աստուած Աբրահամու հօր ձերում· եւ ոչ կարէ ոք ընդդէմ ձեր կալ պատերազմաւ՝ զի Աստուած ընդ ձեզ է:… 104· Եւ կալեալ (Հրէից) զճանապարհս անապատին գնացին ի Տաճկաստան առ որդիսն Իս– |

եւ որդիք նահապետին: Ելէք ընդ մեզ, եւ փրկեցէք զմեզ ի ծառայութենէ արքային Յունաց. ...: Իբրեւ զայս լուան՝ քաջալերեալ դիմեցին ի վրայ Հրէաստանի»:

Ապա ազդ եղեալ թագաւորին Յունաց՝ գրէ առ զօրավարն որ ի Հրէաստանի. ...գումարեա՛ զզօրս քո եւ մարտիր ընդ նոսա եւ արգե՛լ զնոսա, զի մի ապստամբեսցեն ի վերայ երկրիդ մերոյ... Եւ վաղվաղակի հասեալք ի միասին լինէին բանակ մեծ. եւ խաղացեալ յառաջ գնացին ընդդէմ հինին ...երթեալ յանդիման լինէին միմեանց ի սահմանս Ապառաժն Արաբիոյ. տեսանէին զբանակն Մադիամու անթիւ բազմութեամբ, եւ իբրեւ զգունդս մարախոյ զանչափութիւն ուղտուցն եւ ձիոց: Ապա անդխտացեալ զօրուն Յունաց անդխտութիւն մեծ՝ զատուցանէին զաղխս բանակին իւրեանց բացագոյն ի նոցանէն բազում վտաւանօք. լքանէին ի բանակին եւ զերիվարս իւրեանց. եւ ինքեանք ի հետիոտս սպառազինեալ՝ ընդդէմ նոցա գնացին պատերազմել: Եւ ի ջերմութենէ արեգականն տապոյն եւ ծարաւոյ ապառաժէն եւ յաւազոյն աշխատեալք, եւ պարտասեալք ի ծանրութենէ զինուցն՝ անկան ի մէջ թշնամեացն: Եւ նոքա քանզի ի հանգստեան էին՝ յանկարծակի հեծեալ յերիվարս, յարձակեալ ի վերայ նոցա՝ հարին բազում հարուածս ի զօրուէն Յունաց, եւ ի փախուստ դարձուցեալ զմնացեալսն, հետամուտ եղեալ մինչեւ ի բանակն Յունաց զբազումս առ հասարակ կոտորէին. եւ մնացեալքն հեծեալ յերիվարս փախստական անկան յաշխարհն իւրեանց: Եւ Իսմայելացւոցն լցեալ յաւարէն Յունաց... դարձան խնդութեամբ յաշխարհն իւրեանց: Եւ յայնմհետէ տիրեցին Հրէաստանի եւ Ասորեստանի վերայ, եւ արկին ընդ հարկօք զաշխարհն եւ զեկեղեցիս սրբոյ քաղաքին Երուսաղէմի»:

մայէլի, կոչէն զնոսա յիւրեանց օգնականութիւն. եւ ծանուցանեն նոցա զհարազատութիւն իւրեանց գրոց կտակաւ..

105. Յայնժամ ամենեքեան ժողովեցան... եւ հասեալ յՌաաբովթ Մովաբու ի սահմանս Ռուբէնի, զի բանակն Յունաց բանակեալ էին յԱրաբիա. եւ անկեալ յանկարծ ի վրայ նոցա հարին զնոսա... եւ դարձեալ բանակեցան յԱրաբիա:

Եւ ամենայն մնացորդք ժողովրդեան որդւոցն Իսրայէլի ժողովեալ միաբանեցան ի միասին. եւ եղեն զօր մեծ:

106. Եւ սկսաւ գունդ կազմել (Կայսրն) իբրեւ եւթանասուն հազար . . . Իսկ նոցա հասեալ ի Յորդանան եւ անցին յԱրաբիա. եւ թողեալ զբանակս իւրեանց ի գետեզերին՝ հետիոտս գնացին ի վերայ բանակի նոցա: Իսկ նոցա զմասն ինչ ի բանակէն դարանակալ արարեալ աստի եւ անտի... եւ ածեալ զուղտերամակսն մակաղեցին շուրջ զբանակաւն եւ զվրանօքն... Եւ նոքա յոգնեալք ի ճանապարհէն՝ ուր ուրեմն կարացին հատանել զամրութիւն բանակին, եւ սկսան սատակել զնոսա: Յանկարծակի յարեան դարանակալքն ի տեղւոջէ իւրեանց եւ յարձակեցան ի վերայ նոցա. եւ անկեալ ահ տեառն ի վերայ զօրացն Յունացն, եւ ի փախուստ դարձան առաջի նոցա. եւ ոչ դոյր նոցա փախուստ ի թանձրութենէ աւազոյն, զի թաղէին ոտքն մինչեւ ի սրունսն, եւ տագնապ մեծ յարեգականն ջերմութենէն, եւ սուր թշնամւոյն ի վրայ նոցա: Արդ անկան ամենայն զօրավարքն եւ կործանեցան. եւ եղեւ թիւ անկելոցն աւելի քան զերկու հազարս: Եւ սակաւք ի նոցանէ ապրեալք փախստական անկանէին ի տեղի ապաստանի: Եւ նոքա (Իսմայելացիք) անցեալք ընդ Յորդանան՝ բանակեցան յԵրիքով: Յայնժամ... հնազանդեցան ի ծառայութիւն նոցա ամենեքեան... Ապա (եւ Երուսաղէմայեցիքն) ...հնազանդեցան ի ծառայութիւն նոցա:

Աւելորդ է ըսել, թէ որքան ճարտարութեամբ կ՚օգտուի Ղեւոնդ իւր աղբիւրէն: Բացայայտ կը տեսնուի իր մէջ ձգտում՝ ընդլայնելով եւ համառօտելով անզգալի ցուցնել իւր կախումը Սեբիոսէն: Սեբիոսէն քաղուած կ՚երեւայ նաեւ էջ 7—8 ի սահմանս Բազուձորոյ եւ Մարդուցայից (Արտազ) Բիւզանդական-հայկական եւ Արաբական բանակներու առաջին ընդհարումի պատմութիւնը: Այս կռուի մասին թէեւ այժմ Սեբիոսի մէջ առանձին հատուած մը չկայ, բայց ակնարկութիւն մը (էջ 138) ենթադրել կու տայ, թէ Հերակղի պատմիչը ճառած ըլլայ անոր մասին իւր Պատմութեան մէջ՝ անկատար տեղ մը, որ այսօր կը պակսի: Նոյն աղբիւրէն օգտուած է Ղեւոնդ նաեւ Դունայ 640ի (էջ 9 = Սեբ. 108—109) եւ Արծափի 643ի (էջ 11—12 = Սեբ. 116—118) առումները պատմելու ժամանակ: Չեմ ուզեր այսու մերժել թէ Ղեւոնդ ունեցած չէ այս մասին աւանդութիւններ. առանց տարակուսի անգիր աղբիւրներէ (հմմտ. էջ 136) հնարաւոր եղած է իրեն տալ նոր մանրամասնութիւններ ալ:

Սեբիոսի ազդեցութիւնն ներգործած է նաեւ իր ոճին վրայ. Ղեւոնդ տեղ տեղ կը խօսի Սեբիոսի բառերով, որոնք անչուշտ յաճախ ընթերցման արդիւնք են. հմմտ. «Տային տանել նմա (Կայսեր) ընծայս յաւարէ թշնամեացն զընտիրս երիվարաց տաճիկ ձիոց... եւ Կայսրն ընկալեալ զայն նուէր՝ մեծապէս գոհութիւնս մատուցանէր արարչին եւ շնորհակալութիւն Սմբատայ եւ նախարարացն»... էջ 26, 114 = Սեբ. 118. «Ետ տանել (Թէոդորոս) զօրավարն Հայոց զընծայս Կոստանդնի ի պատերազմէն՝ զընտիր ընտիր երիվարացն հարիւր ձի, զոր առեալ արքայի՝ ուրախ եղեւ ինքն եւ ամենայն պաղատն. եւ արձակեաց անդրէն շնորհակալութիւն մեծ»:

7. Ունեցած է Ղեւոնդ Ամիրապետներու ժամանակագրութիւն մը. որուն վրայ յեցած կ'աւանդէ անոնց գահակալութեան ճշգրիտ տարիներն, նոյն իսկ ամիսներով: Այս աղբիւրը քանի չի ճանչնար զԱլի ի չարս Մահմետի յաջորդներու, ըլլալու է սինի, այս ինքն արաբական ծագումէ: Այսպիսի արքայացանկեր կ'երեւայ թէ կային հրապարակի վրայ Թ. դարուն: Թովմաս Արծրունի տեսած է նմաններ, որ տալով ամիրապետներու նոր ցանկ մը կը գրէ (էջ 106). «Եւ զրոյցք ժամանակաց սոցա յայլոց գրեալ յառաջագոյն, աւելորդ համարեցաք երկրորդել: Նաեւ զանուանս նոցա եւ զթիւ ժամանակացն այլափոխս ետուն մեզ»: Թովմաս ունի իւր առաջ Ղեւոնդի ժամանակագրութիւնը. բայց շատ տեղ կը շեղի անկէ: Այս շեղումները հետաքրքրական են. անոնք արահետ պիտի ծառայեն հանելու իր միւս աղբիւրներուն, որոնց մէջ պէտք է հաշուել անշուշտ եւ Շապուհ Բագրատունին:

8. Կ'երեւայ թէ 650—750 շրջանի համար կար հրապարակի վրայ պատմական գրուածք մը Թ. դարուն: Յովհաննէս Դրասխանակերտցի ունեցած է աչքի առաջ կաթողիկոսներու գաւազանագիրք մը. ուսկից կը քաղէ ուրիշ պատմական տեղեկութիւններ ալ: Դրասխանակերտցի տեղ մը (էջ 92) կը գրէ. «Յայնմ ժամանակի ասեն լինել զկռիւն որ ի քաղաքագիւղն Երեւանի, զոր եւ բաւական քեզ ուսուցանէ զայնր պատերազմի զհանգամանս որ նախ քան զմեզ պատմագրեցին»: Այս մասին Ղեւոնդ յիշատակութիւն չունի: Հաւանօրէն չ'ակնարկուիր նաեւ Շապուհ պատմագիրը: Գրիգոր Մամիկոնեանի եւ Արուճի եկեղեցւոյն շինութեան մասին (Ղեւոնդ, 15, Յովհ. 90—91) կ'երեւայ թէ գրաւոր աղբիւր մ'եղած է յԱրուճ, ուսկից օգտուած են իրարմէ անկախ երկու պատմագիրները. Դրասխանակերտցւոյն ծանօթ չէր Ղեւոնդի Պատմութիւնը. գոնէ չունի անկէ յայտնի քաղուածներ:

## 6. ԹՈՒՂԹ ՕՄԱՐԱՅ ԱՌ ԼԵՒՈՆ ԿԱՅՍՐ ԵՒ ՊԱՏԱՍԽԱՆԻ ԿԱՅՍԵՐ

Ղեւոնդ (էջ 42) յիշելով Օմարի իշխանութեան սկիզբն անցնիլը (717—720), կ'աւելցնէ. «Սոյն Օմար գրէ թուղթ առ Լեւոն Կայսր Հոռոմոց յաղագս ուսանելոյ զզօրութիւն հաւատոյս մերոյ. յորում էին պէսպէս հարցմունք, զորս համառօտ ի ներքոյ դրոշմեցից»: Թղթին սկզբնաւորութիւնն է.

«Անուամբն Աստուծոյ. Օմար, իշխան հաւատացելոց, առ Լեւոն Կայսր Հոռոմոց: Բազում անգամ կամեցայ գիտել զձերոյ կարծեօք հաւատոյդ ուսումնդ...»: — «Զայս ամենայն եւ յոլովագոյն քան զայս ընդդիմաբանութիւնս գրէր Օմար իշխանն Իսմայէլի առ թագաւորն Լեւոն» (էջ 43—45. գլուխ ԺԳ.):

Լեւոն Գ. Իսաւրացի (25 Մարտ 717—741) կը պատասխանէ թղթիս.

«Փլաբիոն Լեւոն, Կայսր հաւատացեալ ի Տէր Յիսուս Քրիստոս... Օմարայ Սառակինոսաց առաջնորդի: Որպիսի բան եղից առաջի...»: — «Զայս ի պատճէն պատասխանւոյ գրեալ Կայսերն Լեւոնի, առաքէ ի ձեռն հաւատարիմ ծառայի իւրոյ առ Օմար իշխանն Իսմայէլի, զոր իբրեւ ընթերցաւ՝ յոյժ պատկառանօք ամաչեաց զամօթ մեծ» (էջ 45—98, գլուխ ԺԴ.):

Ղեւոնդ իւր տրամադրութեան տակ ունէր հայերէն թարգմանութեամբ թէ Օմարի թուղթն եւ թէ Լեւոնի պատասխանը: Հաւանօրէն այս թղթերը կը կանխէր համառօտ ներածական մուտք մը, ուր խօսուած էր Օմար Բ.ի եւ թերեւս նաեւ անոր յաջորդ Եզիտի կրօնական քաղաքականութեան մասին: Բայց Ղեւոնդ ազատութեամբ վարուած է իւր առաջ գտնուած բնագիրներու հետ. մինչ քրիստոնեայ Կայսեր պատասխանը՝ համարելով շահագրգիռ իւր ընթերցողներուն համար՝ ի մէջ կը բերէ ամբողջութեամբ, Օմարի թուղթին բովանդակութիւնը կը համառօտէ սակաւ տողերու մէջ. «զորս համառօտ ի ներքոյ դրոշմեցից». քանի որ անոր պէսպէս հարցումները կամ առարկութիւններն ընդարձակօրէն, երբեմն նաեւ բառ առ բառ նկատի առնուած էին Լեւոնի Պատասխանին մէջ: Ուշադրութեան արժանի է որ Ղեւոնդ իւր նախաբանին մէջ Օմարի թղթին նպատակը կը դնէ «յաղագս ուսանելոյ զզօրութիւն հաւատոյս մերոյ», մինչ վերջաբանին մէջ թուղթին բովանդակութիւնը «ընդդիմաբանութիւն» կ'որակուի: Անշուշտ այսպէս ալ էր Օմարի թղթին իսկական նպատակը, այս ինքն տկար ցոյց տալ Կայսեր քրիստոնէական կրօնի հիմքերը եւ հրապուրել աւելի կատարեալ կրօնի մը՝ Իսլամութեան:

Ոչ Օմարի թուղթը եւ ոչ Լեւոնի պատասխանը հասած են մեզի արաբերէն կամ յունարէն բնագրով։ Անոնց աւանդապահն է միայն Ղեւոնդ, որ պահպանած է հայերէն թարգմանութեամբ։

Այս թղթակցութեան ծանօթ են Թովմաս Արծրունի (էջ 105), Վարդան (էջ 73) եւ Կիրակոս (էջ 37), ուսկից քաղուածքներ ալ կ'ընեն։ Օմարի թղթին ծանօթ են նաեւ Բիւզանդական մատենագիրները. Թէոփանէս յամին աշխ. 6210 (էջ 614 Բոննի տպ.) կը գրէ. ἐποίησε δέ (Οὔμαριος) καὶ ἐπιστολὴν δογματικὴν πρὸς Λέοντα τὸν βασιλέα, οἰόμενος πείσειν αὐτὸν τοῦ μαγαρίσαι, այս ինքն «Առաքեաց իսկ (Օմար) եւ թուղթ վարդապետական առ Լեւոն կայսր, յորում զիւրոց հաւատոց բանս եղեալ համոզել զնա ջանայր»։ Այսպէս նաեւ հետեւելով Թէոփանէսի՝ Անաստաս Մատենադարանապետ (տպ. Բոննի, էջ 209). fecit autem (Humar) et epistolam dogmaticam ad Leonem imperatorem ratus impius ei persuadere, quo a fide sua recederet, եւ Կեդրենոս (էջ 792, տպ. Բոննի). ἔγραψε δὲ καὶ πρὸς τὸν βασιλέα Λέοντα τοῦ μαγαρίσαι καὶ αὐτόν, «գրեաց եւ առ Լեւոն կայսր առ ի համոզել եւ զնա»։ Բայց չեն յիշեր թէ Կայսրը պատասխանած ըլլայ։

Նման բովանդակութեամբ թուղթ մը՝ գրուած Լեւոն Կայսեր կողմէն առ Օմար իշխան պահպանած է նաեւ ասորական գրականութիւնը։ Այս թուղթը առաջին անգամ հրապարակ հանեց S. Champerius, եւ զայն ասորերէնէ («քաղդէերէնէ») լատիներէն թարգմանելով հրատարակեց 1501ին ի Լուգդունոն հետեւեալ խորագրի տակ. Leonis cognomento philosophi, imperatoris Constantinopolitani, ad Omarum Saracenorum regem de fidei Christianae ac mysteriis et de variis Saracenorum haeresibus et blasphemiis epistola, Symphoriano Champerio Lugdunensi ex Chaldaica in linguam Latinam interprete. Lugduni, 1501[17]։

Որովհետեւ ասորերէն բնագրին մէջ ընծայուած է թուղթս «Լեւոնի, իմաստասէր անուանելոյ», այս պատճառ ալ վերոյիշեալ կրկին հաւաքումներու մէջ զետեղուած է ի շարս Լեւոն Զ. Իմաստասէր Կայսեր (886—

[17] Այս գրութիւնը ապա արտատպուած է ի հաւաքման՝ Bibliotheca Patrum maxima, t. XVII, p. 45 եւ ասկէ Migne, Patrologia Graeca, t. 107, p. 315—324։

912) գրուածներու. այսպէս յանուն Իմաստասէր կայսեր կը յիշէ զայն նաեւ A. Ehrhard Բիւզանդական գրականութեան Պատմութեան մէջ[18], առանց միտ դնելու որ խօսքն միայն Իսաւրացւոյ մասին կրնայ ըլլալ հոս, քանի որ Իմաստասէր Կայսրը դար ու կէս ժամանակով հեռու է Օմարէն։

Champeriusի երեւան հանած այս բնագիրը իւր բովանդակութեամբը յընդհանուրն միայն համապատասխան է հայերէն խմբագրութեան. կազմութեամբը կը ներկայացնէ համառօտուած խմբագրութիւն մը նախնական օրինակին։ Մինչ հայերէնը մի առ մի վիճաբանութեան նիւթ կ'ընէ Օմարի բազմազան առարկութիւնները, ասորին խոյս տալով վիճաբանութենէ՝ կ'ամփոփէ Կայսեր մտքերն եւ կը դնէ զայն իբրեւ ապացուցուած եզրներ ամիրապետի առաջ։ Ասորւոյն սկզբնաւորութիւնն է. «Փառք Տեառն եւ գործք-բազմապատիկ գոհութեան...»։

Օմարի եւ Լեւոնի միջեւ փոխանակուած այս թղթերուն ծանօթ կ'երեւայ նաեւ Ագապիոս Մաբբուգացի իւր արաբերէն գրած Պատմութեան մէջ (հմմտ. Agapius Mabbugensis, Historia universalis, p. 358, ed. L. Cheikho)։

Հակառակ այս վկայութիւններու J. Mohl, 1856, Յունիս 23ին Ասիական Ընկերութեան տուած տեղեկագրին մէջ յայտնեց թղթերուս հարազատութեան մասին կասկած. «Ղեւոնդի գրքին մէկ երրորդական մասը բռնած է Լեւոն Իսաւրացւոյ առ Օմար Բ. գրած աստուածաբանական մէկ նամակը, որ թերեւս վաւերական չէ (peut-être apogryphe). եթէ վաւերական ալ համարուի, յամենայն դէպս Հայաստանի պատմութեան հետ ամենեւին աղերս չունի» (Մասեաց Աղաւնի, 1856, էջ 243)։ Բայց Շահնազարեան (Յառաջաբան, էջ 17) կը պնդէ դեռ թղթերուս հարազատութեան վրայ, թէեւ առանց մասնաւոր ապացոյցի մը[19]։ Աւելի լրջութեամբ մերձեցաւ հարցիս Edurd de Muralt ակա-

[18] K. Krumbacher, Geschichte der byzantinischen Literatur, München 1897, էջ 168. գրեց Լեւոն իմաստասէր նաեւ «դաւանաբանական թուղթ մը առ Օմար ամիրապետ, որ զանազան վիճաբանական խնդիրներու մասին կը խօսի»։

[19] Տր. Միւլլէր, Հանդ. Ամս. 1888, էջ 326, վաւերականութեան դէմ փաստ յառաջ կը բերէ Ասողիկի լռութիւնը. բայց նա չէ նկատած որ Ասողիկ Օմարի գահակալութիւնն անգամ չէ յիշած. ուսկից հետեւցուցած է իրաւամբ հրատարակիչն՝ Ստ. Մալխասեան, թէ Ասողիկի բնագիրն հոս թերոյթ մ'ունի (էջ 370, ծան. 98)։ Տես այս մասին նաեւ վարը։

նաւոր բիւզանդագէտը իւր զեկուցագրին մէջ, զոր գրած է ի խնդրոյ Բրոսէի (տե՛ս Պատկանեան, էջ IX—X եւ Եզեան, էջ 184—185)։ Բայց de Muralt եթէ չկասկածեցաւ Թղթակցութիւններուս վաւերականութեան մասին, բայց եւ ի նպաստ անոր չբերաւ որ եւ իցէ ապացոյց. իր վերլուծութիւնը հետաքրքրական է միայն անոր համար, որ կը բարձրացնէ Կայսեր Թղթին արժէքը՝ իբրեւ կարեւոր յիշատակարան արաբական եւ քրիստոնէական աշխարհահայեացքներու ուսումնասիրութեան համար։

Թղթերուս բովանդակութիւնը կարող է համապատասխան ըլլալ Ը. դարու առաջին քառորդի աշխարհահայեացքներուն, յոյնարաբական մտածելակերպին եւ տրամաբանութեան, բայց չի հետեւիր ասկէ թէ Օմարի Թուղթը Ամիրապետի գրչէն բղխած է եւ Լեւոնի պատասխանը Կայսեր աստուածաբանական հմտութեան ծնունդն է։ Ամբողջը կը կրէ իր վրայ անվաւերականի նկարագիրը. եւ է հաւանօրէն Ը. դարու առաջին կէսէն, գրուած քրիստոնեայ անձնաւորութենէ մը, որ ապրած է արաբ շրջաններու հետ անձուկ յարաբերութեան մէջ։ Հեղինակը յեցած է այն աւանդութեան վրայ, թէ Օմար Բ. գրած է Լեւոն Գ. Իսաւրացւոյն կրօնական բովանդակութեամբ Թուղթ մը. աւանդութիւնս մարմնացնելու համար հաւաքած է ի մի այն ամէն առարկութիւններն, որոնք քրիստոնէից եւ արաբներու մէջ այս դարուն վիճմանց սովորական տեղիքներն էին. այս առարկութիւններուն մի առ մի պատասխանելով, կ'ընձեռէր ժամանակակիցներուն առ ձեռն գրքոյկ մը, ուր կարելի էր գտնել հակառակորդներու առարկութիւններուն հետ նաեւ անոնց հերքումը։ Գրութեան տեղը հաւանօրէն Ասորիք—Պաղեստինն է։

Թղթերուս սկզբնագիրն եղած է յունարէն։ Հայերէն Թարգմանութեան մէջ այնպէս զգալի են յունարէն սկզբնագրին հետքերն, որ կոյր աչքով իսկ կարելի է նկատել անոնց խորութիւնն ու բարձրութիւնը։ Հայ Թարգմանիչը թէեւ ճարտար ըստ բաւականին իւր արուեստին մէջ, բայց եւ այնպէս հետեւած է տեղ տեղ սկզբնագրին ստրկօրէն, չէ կրցած լուծել յունարէնի խրթնաբանութիւնը, ոճագիտութիւնը։

1. Տեղ տեղ պահպանած է յունարէն բառերն անփոփոխ. «Արդ գիտեա՛ զի պառակղիտոս (παράκλητος) «մխիթարիչ» անուանի եւ ոչ Մահմատ, այս ինքն «գոհանամ», եւքառիստէ (εὐχαριστέω) ի մեր լեզու եւ ո՛չ պառակղիտոս» (էջ 58). միւռինոս μύρινος (էջ 93)։ Եսայեայ Կ. 13. ἐν κυπαρίσσῳ καὶ πεύκῃ καὶ κέδρῳ ἅμα կը Թարգմանէ. «Մայրիւ, սաէ, եւ պեկկիւ եւ պեկկիւռիսաւ առ հասարակ» (էջ 90). Սովորական Թարգմանութիւնն ունի. «Սարդիւն եւ սաւսիւ եւ նոճով եւ մայրիւ առ հասարակ». Պեկ ըստ յունարէնին կարդալու է անշուշտ պեւկէ, πεύκη, նոճի, սօսի. իսկ պեկկիւռիս աղաւաղուած ձեւն է κυπάρισσος, կիւպառիս, սարդ բառին։

2. Ուրիշ տեղեր բառերն Թարգմանած է կամ ստրկօրէն եւ կամ համաձայն յունարէն բառակազմութեան. Սրատեսող, ὀξυωπής (էջ 70). զԱռամսեայն կանանց, καταμήνια ամսական (էջ 87). յառաջակրթութիւն, προγυμνασία (էջ 57). Այլացեղս եւ Այլասկզբունս, ἑτερογένος καὶ ἑτερόγονος (էջ 66). «Մեծացոյց ի վերայ իմ զգարշապար իւր. էջ 75. այս Թարգմանութիւնն է Սաղմ. Խ. 10 համարին. ἐμεγάλυνεν ἐπ' ἐμὲ πτερνισμόν, որ Սովորական օրինակի մէջ հայացուած է. «յաճախեաց առնել ինձ խաբէութիւն». յունարէն μεγαλύνω կը նշանակէ «մեծացուցանեմ, յաճախեմ». իսկ πτερνισμό; (πτέρια, «գարշապար», πτερνίσω, «գարշապարով խթանել, խաբել» բառէն) ունի կրկին նշանակութիւն. «գարշապարով խթանելը». «խաբէութիւն»։ Դարձեալ Սաղմ. Բ. 8 կը Թարգմանուի. «Եւ յունողութիւն քեզ զծագս երկրի» (էջ 69), καὶ τὴν κατασχεσίν σου τὰ πέρατα τῆς γῆς, այս ինքն «եւ իշխանութիւն քեզ զամենայն ծագս երկրի» ըստ հին Թարգմանութեան. κατάσχεσις, «ունողութիւն», ստացում, իշխանութիւն։ Հմմտ. եւ «Եւ յաղագս զամենայն հեթանոսան ընլոյ որ ի նա հաւատոց, յարեաց ի նոյն...» (էջ 69). «Լուր Հոգւոյն սրբոյ ի Սաղմոսին ասացեալ մարգարէին վասն զերելոյն Հրէից» (էջ 55) են։

3. Հայերէն Թարգմանութիւնը կ'երեւայ թէ ապա ուղղուած է եւ ինչ ինչ մթառութիւններ լուսաբանուած, ա՛յն ձեռքէն, որ համառօտած է Օմարի Թուղթը։ Այս առթիւ թերեւս մուծուած են նաեւ յաւելուածներ. այսպիսի յաւելուած մը կը թուի ինձ հետեւեալ տեղիքը. «Ասեն զօձէ, եթէ ընդ միւռենէս զեռնոյ որ ի ծովու է՝ ի խառնա-

կումն մերձաւորութեան գայ. եւ իբրեւ մերձենայ յեզր ծովու՝ զմահացու Թոյնսն ի բաց դնէ. եւ այնպէս կատարէ զցանկութիւնն» (93)։ Այս հատուածը հաւանօրէն առնուած է Բարուախօսէն եւ ունի հետեւեալ համեմատութիւնն Բարսղի Կեսարացւոյ Վեցօրէից մէջ (էջ 151). «Իժ՝ չար գազան եւ դառն ի սողունս երկրի, ի զուգութիւն ամուսնութեան հաղորդի ընդ միւռենէս զեռնոյ, որ բնակեալ է ի ծովու. եւ այսպէս զայս նշան (տպ. նշանս) ցուցանէ զսէր իւր իժն. երթայ կայ առ ծովեզերին եւ շչէ. այսու բարբառով կոչէ ածէ ի ներքուստ ի խորոցն զՄիւռենէս ի հաղորդութիւն ամուսնութեան. եւ գայ հնազանդի՝ խառնակել յամուսնութիւն (տպ. ամուսնութիւն) ընդ դառնագոյն գազանին»։ Բարուախօսի հայերէն թարգմանութեան մէջ չկայ այժմ այս օրինակը. ասոր փոխարէն ունի երրորդ ձեւ մը[20] (ԺԳ, վասն Իժի), որ համեմատութեան եզր չունի այս խմբագրութիւններու հետ։

Նկատմամբ թարգմանութեան տեղւոյն եւ ժամանակին կը կարծէ Պատկանեան թէ անմիջապէս Թղթերու գրուելէն ետքը, ուստի 718ին թարգմանուած են անոնք հայերէնի, կա՛մ Կ. Պոլիս, ուր արքունի պալատան մէջ կային բազմաթիւ հայ պաշտօնեաներ, եւ կամ Դամասկոս, ուր կը գտնուէին մեծ թուով հայ պատանդներ եւ գերիներ։ Թէ վերջիններս սակայն ծանօ՞թ էին յոյն լեզուի, դժուարին է հաստատել։ Որովհետեւ թարգմանութեան ինչ ինչ ձեւեր, բարդութեան ինչ ինչ կազմութիւններ եւ առումներ համաձայն են թարգմանութեան այն արուեստին հետ, որ յատուկ է հելլենաբան դպրոցին (հմմտ. ὄργανον, գործի բառին թարգմանութիւնն՝ գործարան, էջ 44, 55), կ'երեւայ թէ թարգմանիչը ծանօթ եղած է այն թարգմանութիւններուն։ Այս շրջանին՝ Ը. դարու առաջին քառորդին զբաղած էին Բիւզանդիոնի արքունիքի մօտ նման թարգմանութիւններով Ստեփանոս Սիւնեցի եւ Դաւիթ Կենաա։ Կարելի էր թերեւս վայրկեան մը մտածել, թէ անոնց ձեռքով հայացուած ըլլայ նաեւ այս գրութիւնը, որ հրապարակին վրայ նորութիւն մ'եղած ըլլալու էր այն ատեն։ Բայց որովհետեւ դժուարին է ենթադրել թէ այսչափ վաղ յօրինուած ըլլան Թղթերս, աւելի հաւանական կը համարիմ թարգմանութեան, լաւ եւս՝ այժմեան խմբագրութեան ժամանակը յետաձգել մինչեւ Թ. դար։ Առ այս ուշադրութեան արժանի է Լեւոնի Թղթին մէկ տեղին, ուր մինչ Մահմետի երեւումէն մինչեւ Լեւոն Իսաւրացի ժամանակի անջրպետը «Ճ ամ, փոքր ինչ աւելի կամ պակաս» կը հաշուի (622 + 100 = 722), նոյնը կ'ըսուի թէ «Պ ամք են, փոքր ինչ պակաս կամ աւելի, յորմէ (հետէ) Քրիստոս երեւեցաւ» (էջ 60—61)։ Այս վերջին թուականը 800 «փոքր ինչ պակաս կամ աւելի» Իսաւրացւոյ ժամանակի համար անճիշդ է, բայց ուղիղ կու գայ Ղեւոնդի գրութեան կամ Թղթիս այժմեան խմբագրութեան ժամանակի համար։ Ինչպէս վերագոյն նկատեցինք, Ղեւոնդ աւարտեց իւր Պատմութիւնը 790ին. ուստի Թղթերս թարգմանուած եւ Ղեւոնդի Պատմութեան մէջ մուծուած պիտի ըլլան այդ թուականէն յետոյ, հաւանօրէն Թ. դարու առաջին տասնեակին, «փոքր ինչ պակաս կամ աւելի»։ Թարգմանիչը ծանօթ է մահմետական կրօնախօսութեան եւ անոր մէջէն ընձիւղած հերձուածներուն. հերձուածողներու բազմազան անունները, որոնք յունարէն տառադարձութեամբ անշուշտ կերպարանափոխուած էին, յաջողած է իրեն հայացնել սեմական հնչիւնով։ Արաբերէն եւ յունարէն լեզուներու ծանօթ այս անձը դժուարաւ կարող էր զուտ յունական կամ զուտ արաբական շրջանի մէջ զարգացած ըլլալ. բայց Երուսաղէմ այն յարմարագոյն միջավայրն էր, ուր երկու լեզուներու ալ հաւասարապէս կարող էր ընտանի ըլլալ թարգմանիչը։

Թէեւ վերագոյն գրած էի. «հաւանօրէն Ղեւոնդ անձամբ հայացուց» այս Թղթերը ի Կ. Պոլիս, բայց այժմ հիմնուած նոր քննութիւններուս վրայ, կը հրաժարիմ այս ենթադրութենէս։ Թղթերս հասած են մեզի ընդարձակուած հայերէն խմբագրութեամբ եւ Ղեւոնդի Պատմութեան մէջ ներմուծուած են՝ հեղինակէն անկախ. նա հաւանօրէն ոչ մէկ աղերս չունի Թղթերուս հետ։ Արդէն Շահնազարեան եւ Պատկանեան նկատած էին թէ Ղեւոնդի լեզուի նկարագիրը բազմօք կը հեռանայ Թղթերուս մթին, անհարթ լեզուի նկարագրէն։ Այս դատաստանը նկատմամբ լեզուի, թէեւ յինքեան շատ խիստ է, բայց յամենայն դէպս ուղղագրութիւնը ան-

[20] Н. Марръ, Физіологъ, Армяно-грузинскій изводъ. С. Петербургъ 1904, էջ 16։

*համաձայն է Ղեւոնդի մտածելակերպին։ Այս կը տեսնուի նաեւ Լեւոն Կայսեր առ Մսլիմ գրած թղթէն, որ առանց տարակուսի Ղեւոնդի հռետորական մէկ չարադրութիւնն է։ Մսլիմի յոխորտ եւ սպառնալից թղթին կը պատասխանէ Կայսրը ինքնագիտակցութեամբ. ուր ոչ թէ վատասրտութեամբ «ի ձէնջ տանջիմք սպառնալեօք եւ մահուամբ» կը գրէ, այլ արիաբար թափուած արեան փոխարէն արիւն կը պահանջէ. երկու բնագիրներն ալ յեցած են ԽԳ. 4—7 Սաղմոսին վրայ. համեմատութիւնը հետաքրքրական է ուրիշ տեսակէտով ալ.*

| Թուղթ առ Օմար, էջ 97. | Թուղթ առ Մսլիմ, էջ 108. |
| --- | --- |
| *Արդ վասն այսպիսի յուսոյ ի ձէնջ տանջիմք սպառնալեօք եւ մահուամբ եւ ի մէնջ համբերութեամբ. զի եւ ոչ* յաղեղն մեր յուսամք, եւ ոչ սուր *մեր փրկեսցէ զմեզ.* այլ աջ *տեառն* եւ բազուկ *նորա եւ* լուսաւորութիւն *երեսաց նորա*[21]. *եթէ յայսմ աշխարհի տակաւին կամեսցի եւ հաճեսցի...։* | *Այլ մեք* ոչ եթէ յաղեղն *մեր պարծիմք*, եւ ոչ սրով *մերով* կեցցուք, այլ աջ *տեառն* եւ բազուկ *նորա եւ պահպանող զօրութիւն*[22] լուսոյ երեսաց *նորա... Կարող է (Աստուած) խորտակել զայնոսիկ որ պարծին յամբարտաւանութիւն իւրեանց իբրեւ զքեզդ, որ ոչ ածեր զմտաւ երբեք, եթէ զորս խողխողեաց սուր քո, եւ կամ զերեցան յերկրէն իմմէ՝ խնդէ արիւն նոցա ի ձեռաց քոց։ Քանզի ոչ վասն արդարութեան գործոց քոց, այլ վասն մերոց անօրէնութեանց թողացոյց զզաւազան մեղաւորաց ածել ի վիճակս արդարոց, զի զչափ առցուք տկարութեանս մերոյ եւ խրատեսցուք գնալ ըստ կամաց հաճոյից արարչին։* |

[21] *Սաղմ. Խ. Գ. 4—7. Ոչ թէ սրով իւրեանց ժառանգեցեն զերկիր, եւ ոչ բազուկ նոցա թէ փրկեաց զնոսա. այլ աջ քո եւ բազուկ քո եւ լոյս երեսաց քոց* (καὶ ὁ φωτισμὸς του προσώπου σου), *զի հաճեցար ընդ նոսա... ոչ թէ յաղեղն իմ յուսացեալ եմ եւ ոչ սուր իմ կեցուցանէ զիս։*

[22] *«Պահպանող զօրութիւն» փոխառութիւն մըն է անշուշտ Ղեւոնդի քով (հմմտ. եւ էջ 34. «որպէս երից մանկանց առաքեցեր յօգնականութիւն* զպահպանող զօրութիւն *հրեշտակին») եւ կ'ենթադրէ յոյն հօր մը Մեկնութիւնը ԽԳ. Սաղմոսին։ Կիւրղի Կոչման ընծայութեան թարգմանիչը ունի անգամ մը. «ի* պահպանող զօրութիւն *անդր առաքեաց զԹեւս»* (էջ 95), *այսպէս թարգմանելով յոյն բնագրին* τῆς γὰρ φρουρητικῆς αὐτοῦ δυνάμεως εἰς πτέρυγας λαμβανομένης (ed. Reischl, էջ 164). *Թերեւս աչքի առաջ ունեցած ըլլայ Ղեւոնդ Յովհ. Ոսկեբերանի Մեկնութիւնն Սաղմոսաց, ուր կը գրէ Մեկնիչը.* καί ὁ φωτισμὸς τοῦ προσώπου σου, ἡ ἀντίλεψις, ἡ πρόνοια. τό γὰρ βουληθῆναι, τὸ παρεῖναι ἤρκεσε μόνον αὐθῖς (Opera omnia, V, էջ 164, ed. de Montfaucon), *այս ինքն՝ եւ լոյս երեսաց քոց. օգնականութիւնն (պահպանող զօրութիւն), յառաջգիտութիւնն. զի կամելն, առընթեր լինելն եւեթ բաւական լինիցի։*

*Ղեւոնդ, որ ամէն ջանք տարած է իւր Պատմութիւնն արդարամտութեամբ եւ համառօտախօսութեամբ ի գլուխ հանել, չէր կարող յանկացած ըլլալ խանդարել իւր Պատմութեան ընթացքը այսպիսի երկարաբան եւ ճապաղ թղթակցութիւններու ներմուծմամբ։ Ոչ միայն իւր խուսափումը՝ միջամուխ ըլլալ կրօնական-դաւանաբանական վիճաբանութիւններու մէջ՝ կ'արդարացնէ մեր կասկածը, այլ եւ ներքին հակասութիւններ կու գան բողոքել այս միջարկութեան դէմ։*

*Ղեւոնդի Պատմութեան մէջ բնիկ աղուցուածք մըն են այս թղթակցութիւնները, ԺԳ.—ԺԵ. գլուխներն ամբողջութեամբ, որոնք չեն կապակցիր նախորդ եւ յաջորդ հատուածներու, պատմութեան հոսանքին հետ։ Սասանեան Պետութեան տեւողութիւնը Ղեւոնդ կը հաշուէր ՆՁԱ տարի. Լեւոնի թղթին մէջ Պարսկական իշխանութեան տարիները կը հաշուին՝ Ն* (էջ 98)*։ Կ'ըսուի դարձեալ* (էջ 42). *«Զսա աւեն ազնուականագոյն քան զամենայն այլ ազգատոհմին իւրոյ.* սա արար դարձ գերութեանն, զոր գերեաց Մահմետ յաշխարհէս Հայոց յետ այրելոյն զնախարարս աշխարհիս. զի էառ զբազում ամրոցս եւ գերեաց զարս եւ զկանայս։ *Եւ իբրեւ հաստատեցաւ իշխանութիւնն Օմարայ՝ արձակեաց զբովանդակ գերեալսն յիւրաքանչիւր տեղիս եւ խաղաղացոյց զաշխարհս որ ընդ իւրով իշխանութեամբ»։ Այսպէս նաեւ էջ 99. «Քանզի որպէս նախ քան զայս պատմեցաք՝ գերեաց գերեդարձ առնէր...»։ Բայց Ղեւոնդ էջ 33—35, ուր կը պատմէ Մահմետի մարդախոշոշ վայրագութիւնները, նախարարաց հրկիզութիւնը, ամենեւին ակնարկութիւն չէ ըրած, թէ նա գերիներ վարած ըլլայ. գերիներ բռնուած են, բայց քիչ յետոյ մատնուած սուրի եւ կախաղանի։ Այդ պարագան կը յորդորէ զիս մտածելու թէ տողերս բանագողութիւն են այն Յառաջաբանէն, որ զետեղուած էր անշուշտ թղթերուս սկիզբը։*

*Այս գլուխներու փոխարէն իրաւամբ կը պահանջուէր Ղեւոնդէն, որ խօսէր Օմարի արշաւանքներու մասին քրիստոնէութեան դէմ, Եգիպտի եւ Օմարի մէջ ծագած հակա-*

ռակութեան եւ վերջնոյս սպանութեան պատճառին, Լեւոն Իսաւրացւոյ պատկերամարտութեան վրայ, են: Բայց Ղեւոնդ դիտմամբ կամ ոչ՝ կը պահէ այս խնդիրներու մասին լռութիւն:

Ոչ միայն անտեղի կերպով մուծուած են թղթերս Ղեւոնդի Պատմութեան մէջ, այլ եւ անով խանգարուած է Պատմութեան ժամանակագրական ընթացքը: Խանգարումը տեղի ունեցած է ըստ ամենայն հաւանականութեան ներմուծողի ձեռքով եւ որոշ դիտաւորութեամբ: Անիկա Օմարի «առ ազգս քրիստոնէից ցոյց տուած բարեխառնութեան եւ բարեմտութեան» (99) բոլորովին անհամաձայն նկատելով Կ. Պոլսոյ պաշարումը, որուն պարիսպներու առջեւ համայն քրիստոնէութեան նախատինքը կը նախատեսնուէր, փոքրիկ ետեւառաջութեամբ յաջողած է պատմութիւնը համաձայնցնել իր ճաշակին:

Ղեւոնդի Պատմութեան ուղիղ իմացման համար անհրաժեշտ է սակայն բնագրի վերականգնումը եւ թղթերու ետեւառաջութեան ուղղութիւնը, զոր կը պահանջէ նաեւ ճշգրիտ ժամանակագրութիւնը:

Ես կ'առաջարկեմ այսպէս վերականգնել խանգարեալ բնագիրը, ներմուծուած յաւելուածներու դուրս վտարմամբ.

էջ 42, տ. 5. «Եւ այնպէս կորագլուխ դառնայր (Մսլիմ) լի ամօթով յաշխարհն Հոնաց»: Հատուածս իւր շարունակութիւնն ունի էջ 103, տ. 6—112, տ. 5 (գլ. ԺԸ.—Ի). «Եւ յետ այսորիկ սկսաւ զօրաւ ընդդէմ թագաւորին Յունաց»... վերջ 112, 5. «Եւ ոչ էարկ (Մսլիմ) սուր ընդ մէջ իւր մինչեւ ցօր մահուան իւրոյ» (ընդդէմ Բիւզանդիոնի): Այս մասը իւր շարունակութիւնը կը գտնէ էջ 42, 6. «Եւ կատարեալ զայս ամենայն՝ վախճանեցաւ Մսլիման[23]: Յետ նորա փոխանորդէ զիշխանութիւնն Օմար, ամս բ. եւ ամիսս ե. եւ վախճանի: Զսա ասեն ազնուագոյն քան զամենայն արս ազգատոհմին իւրոյ [«սա արար... 42, 11—99, 10 ձրի թողութեամբ» ներմուծում]. էջ 99, 10. ցուցանէր (եւ) առ իւր(ային) ազգն մտերմութիւն լաւագոյն քան զառաջինսն, որ նախ քան զնա իշխանքն էին. քանզի զմթերս գանձուցն բացեալ՝ բաշխէր հոռդ սպայիցն: Եւ յետ այսր ամենայնի եղելոյ վախճանէր»: Կը շարունակուի էջ 99, 14 (գլ. ԺԶ)—101, 10. «ի վերայ աշխարհիս Հայոց»: Այսպէս Պատմութիւնը իւր կապը կը գտնէ միւսանգամ էջ 112, 6 (գլ. ԻԱ) եւ կ'ընթանայ յառաջ:

Այս ետեւառաջութիւնը ԺԹ.—Ի. գլուխներուն շատ հին է. այսպէս տեսած է նաեւ Ստ. Ասողիկ (էջ 128—130): Աղաղակող է Ասողկան քով այն պարագան միայն, որ նա կ'անգիտանայ բոլորովին ԺԳ.—ԺԵ. գլուխները. նոյն իսկ Օմարի իշխանութեան տարիներն անծանօթ մնացած են իրեն: Յիշելով Մսլիմի արշաւանքն Հոնաց դէմ համաձայն ԺԲ. գլխուն, կը յարէ անմիջապէս. «Իսկ յետ Օմարայ եկաց իշխան Եզիտ...» (127): Ստեփանոս Մալխասեան, Ասողկան հրատարակիչը այս առեղծուածը կ'ուզէ լուծել այն մեկնութեամբ (էջ 370, ծան. 98) թէ այս տեղ Ասողիկի Պատմութեան մէջէն թուղթ ինկած է: Շատ հաւանական կը գտնեմ այս մեկնութիւնը. առանց տարակուսի լռութեամբ չէր անցած Ասողիկ Օմարի եւ Լեւոնի թղթերու վրայէն. անոնց համառօտ բովանդակութիւնը կարող էր դոնէ երկու էջի մէջ ամփոփուած ըլլալ:

ԺԹ.—Ի. գլուխներու այս տեղափոխութիւնը կատարուած է անաղմուկ. եւ այն տեղն, ուր զետեղուած է՝ արտաքուստ յարմարած է գեղեցիկ կերպով, այնպէս որ ժամանակագրութեան անուշադիր ընթերցողի մը անզգալի կը մնայ բռնադրաւումը: Բայց ոչ այսպէս ժամանակագրութեան ուշադիր աչքի մը: Դէպքերն, որոնք կը պատմուին հոն, տեղի ունեցած են Սուլէյման Ա.ի (715 Փետրուար—717 Սեպտ. 22) եւ Օմար Բ.ի (717 Սեպտ. 22—720 Փետր. 5 կամ 10) օրով: Ղեւոնդ, էջ 40—42, գլ. ԺԲ կը պատմէր թէ Սուլէյման իւր իշխանութեան երկրորդ տարին, այն է 716ին «գումարէր զօրս բազումս եւ տայր ի ձեռս զօրավարին Մսլիմայ եւ առաքէր ի դրունս Կասպից»: Մսլիմ՝ ամիրապետի եղբայրն էր, որդին Աբդըլ-Մելիքի[24]. որ այնուհետեւ յաճախ կը տեսնուի արաբական արեւելեան բանակի գլուխը: Սա էր որ յաջորդ տարին շարժեց բանակը դէպի Բիւզանդական Փոքր

---

[23] Ղեւոնդի բնագիրն խանգարուած է հոս. ՄՍԼԻՄԱՆ կարդա ՍՈՒԼԻՄԱՆ կամ Սուլէյման. նոյնպէս էջ 41 Սուլիման իմացի՛ր ՄՍԼԻՄ, այսպէս ուղղած էր արդէն իւր տպագրութեան մէջ Շահնազարեան: Սուլէյմանի Մսլիման ընթերցումը թերեւս ծագած ըլլայ էջ 112, 5 տողին ազդեցութեան տակ:

[24] J. Marquart, Eranšahr nach der Geographie des Ps. Moses Khorenatzi. Berlin 1901 էջ 105:

Ասիա եւ ապատակեց Միջերկրեայ գաւառներն եւ գրաւեց Պերգամոսը (Հմմտ. Ղեւոնդ, 103—104) եւ 717 Աւգոստոս 14ին երեւցաւ Կոստանդինուպոլսոյ դռներու առջեւ եւ ենթարկեց մայրաքաղաքը միամեայ պաշարման (Թէոփանէս յամս Աշխարհի 6210)։ Պաշարման երկրորդ ամսին մեռաւ Սուլէյման (22 Սեպտ.) եւ անցաւ իշխանութեան գլուխը Օմար Բ.։ Պաշարումը շարունակուեցաւ։

Այս պատերազմներու մասին կը գրէ Հ. Գելցեր[25]. «Լեւոն Իսաւրացւոյ առաջին տարին կ'իյնայ Կոստանդինուպոլսոյ նշանաւոր պաշարումը։ Մսլիմ (Մասլամա), որ զՊերգամոս գրաւած էր եւ Ասիայի մէջ ձմեռած, 717 ամառը Աբիդոսի մօտ անցաւ Հելլեսպոնտոսը. Աւգոստոսի կէսին բանակ դրաւ մայրաքաղաքին առաջ։ Սեպտեմբերի սկիզբը երեւցաւ նաւատորմիղը Սուլէյմանի հրամանատարութեան տակ։ Լեւոն չրջահայեցութեամբ եւ քաջութեամբ պաշտպանեց մայրաքաղաքը։ Յունական կրակը ոչնչացուց նաւերը. Մահմետականները թէեւ տոկուն անձնազոհութեամբ դիմացան անսովոր ձմեռուան սառնամանիքին, եւ ամբողջ տարի մը նստան մայրաքաղաքին առաջ, բայց ի վերջոյ 718 Աւգոստոսին մեծ կորուստով ստիպուեցան նահանջիլ դէպ ի Ասորիք։ Դէպքիս տիեզերապատմական նշանակութիւնը արժանի է բարձր գնահատման։ Արաբական մրրիկը իր բարձր գագաթնակէտին հասած էր։ Բիւզանդիոն եւ իր կայսրը, այնու որ զայն ետ մղեցին, փրկեցին քրիստոնէութիւնն եւ արեւմտեան քաղաքակրթութիւնը»։

Այսուհետեւ լքեցին արաբները Բիւզանդիոնի դէմ յարձակողական քաղաքականութիւնը եւ դարձուցին իրենց ուշադրութիւնը դէպի Կովկասեան բարձրաբերձ լեռները։ 718ին անցողակի կերպով գրաւեցին Աբխազիան, Լազիստանն եւ Վրաստանը. իսկ Թուրքերու եւ Խազարներու դէմ, որոնք Դերբենդի կապանին հիւսիսային բարձունքներն նստած ստէպ կ'ասպատակէին Հայաստանը, արշաւանքներ կատարելով՝ պաշտպանողական դիրք միայն բռնած էին։ Կ.Պոլսոյ առջեւ ամօթալից պարտութենէ յետոյ իրենց բովանդակ ուշադրութիւնը կենդրոնացուցին այս կէտի վրայ։ Մսլիմ նաեւ հոս կռուեցաւ փոփոխակի յաջողութիւններով 728—731 տարիներուն (Հմմտ. Ղեւոնդ, 102) բայց յատկապէս Մրվան, որդին Աբդլ-Մելիքի եղբօր Մահմետ իբն Մրվանի, սկսեալ 732էն, երբ հօրեղբայրն Հէշմ զինքը Հայաստանի եւ Ատրպատականի ոստիկան անուանեց, մղեց այս կողմերը կռիւներ՝ միջամուխ Խազարերու երկրին մէջ (Հմմտ. Ղեւոնդ, 113—114)։ Բայց չկրցան Արաբները տեւական կերպով ոտք դնել Կովկասի հիւսիսային կողմերը, այնու որ Կասպիական ծովեզերքի ժողովուրդները անդադար կ'ընդվզէին. նաեւ 739ին մեծ ուժով ձեռնարկուած արշաւանքը ձախողեցաւ իր նպատակէն[26]։

Դժբախտաբար Ղեւոնդ այս դէպքերուն նուիրած հատուածներուն մէջ յաճախ խօսած է անորոշ դէմքով. «եւ յետ այնորիկ սկսաւ գոռալ... յղէր դեսպանս...» (103). «առաքէր զՄսլիմ զեղբայր իւր...» (103). «դարձեալ զօր գումարէր... եւ տայր ի ձեռս զօրավարին Մսլիմայ... որոյ ուխտ 'եդեալ երդմամբ չափ եղբօր իւրում...» (105). «եւ յետ այնորիկ առաքէ իշխանն Իսմայէլի զՄսլիմ զեղբայր իւր...» (102) եւ վերջապէս «եւ Նախատէր (Հէշմ) զեղբայր իւր զՄսլիմ» (114)։ Այս անորոշութիւնը դէմքին դիւրաւ կարող էր տեղիք տալ այն ըմբռնումի թէ Մսլիմ լինելով Հէշմ ամիրապետի եղբայրն՝ դէպքերն կատարուած են անոր իշխանութեան օրով. եւ թերեւս այս հասկացողութեամբ ալ տեղափոխուած են ԺԹ.—Ի. գլուխները այն մասին մէջ, ուր յատկապէս կը պատմուին Հէշմի շրջանի գործերը։ Բայց նկատի չէ առնուած որ 705—743, Դամասկոսի գահին վրայ ետեւէ ետեւ նստած են, սակաւումեայ ընդհատմամբ Աբդլ-Մելիքի (685—705) որդիները՝ Վլիթ (705 Հոկտ. 9—715 Փետր.), Սուլէյման (715 Փետր.—717 Սեպտ. 22), Եզիտ Բ. (720 Փետր. 5 կամ 10—724 Յուն. 27), Հէշմ (724 Յուն. 27—743 Փետր. 6). ուստի Մսլիմ զօրավար հաւասարապէս չորս ամիրապետներու ալ եղբայր էր։ Պատմիչը լաւ ծանօթ այս դէմքերու ցեղաբանութեան, ունէր իրաւունք անորոշ արտայայտուելու. բայց իր տողերու ուղիղ իմացումը կը կարօտի դէպքերու ժամանակագրութեան լուրջ ուշադրութեան եւ դէպքերու ուղիղ դասաւորու-

[25] Նա. K. Krumbacherի, Geschichte der byzantinischen Literatur. München 1897, էջ 960—961։

[26] A. Müller, Der Islam im Morgen- und Abendland. I. Bd. Berlin 1885, էջ 418։

թեան: Ղեւոնդի տեղեկագրութեան այն յաջորդութիւնը, որ կը ստացուի նոր դասաւորութեամբս, կը վերականգնէ նաեւ ուղիղ ժամանակագրութիւնը:

Պաշարման տարւոյն (717/718) գրած պիտի ըլլայ Օմար առ Լեւոն այն թուղթը, զոր կը յիշատակեն Թէոփանէս եւ Կեդրենոս: Նոյնը ուրիշ խօսքերով գիտէ նաեւ Ղեւոնդ. «իսկ եւ իսկ խրոխտալով ընդ արքային Լեւոնի՝ յղէր դեսպան եւ գրէր հրովարտակ առ նա այպանութեան, յորում էին բազում ձաղանք» (105): Ըստ Ղեւոնդի գրողն է Մսլիմ (հմմտ. եւ էջ 107), բայց պատմագրին լայն խօսքերն կարելի է տարածել նաեւ Սուլէյմանի կամ անոր յաջորդ Օմարի վրայ: Այս թուղթի խմբագրութիւնն անշուշտ Ղեւոնդի ազատ շարադրութիւնն է. բայց եւ այնպէս կը տեսնուի հոն Թէոփանէսի տողերուն միտքը. «...այլ արդ գիտութեան լիցի քեզ, զի եթէ ոչ մտցես ընդ հարկատրութեամբ իմով... զանուանեալդ քո Սոփիա, որ է տուն երկրպագութեան քո՝ արարեց ի լուալիս զօրաց իմոց, եւ զփայտ խաչիդ որում երկրպագես՝ խորտակեալ ջախջախեցից ի գլուխ քո. զի օգնութիւնք եւ պարծանք հաւատոյս մերոյ մեծ է առաջի տեառն» (էջ 107—108): Այսպիսի թղթակցութեանց քով Ղեւոնդի ճաշակը պիտի չտար թոյլ զետեղել վերոյիշեալ տաղտկալի, անբովանդակալից եւ երկարաբան անվաւերականները: Բայց ինձի հաւանական կը թուի ենթադրել թէ Ղեւոնդ նուիրած ըլլայ քանի մը նկարագրական տողեր Օմարի հանդէպ քրիստոնեաներու հետեւած քաղաքականութեան, որ ինչպէս Բիւզանդական (Թէոփ. յամի 6210) եւ Ասորական ժամանակագիրները կը ներկայացնեն, չափազանց անհանդուրժողական էր: Միքայէլ Ասորի (Chronique, II, էջ 488–489, ed. Chabot) կը գրէ. «Երբ գահ բարձրացաւ Օմար, սկսաւ չարչարել քրիստոնեաները. եւ այս՝ կրկին նպատակաւ. նախ վասն զի կ'ուզէր ամրապնդել մահմետական կարգերը. երկրորդ՝ Կ. Պոլսոյ պատճառաւ, որուն չէին կրցած տիրանալ Տաճիկները եւ որուն առջեւ իրենցմէ մեծ թիւ մը կոտորուած էր: Նախանձախնդիր (իր կրօնին) հակառակ էր քրիստոնեաներուն ամէն կերպ: Զինքը հռչակեցին իրենց հաւատքին նախանձախնդիր. համբաւուած էր բարեպաշտ եւ հեռու ամէն չարութենէ: Որպէս զի քրիստոնեաները ստիպուին մահմետական դառնալ՝ հրամայեց ազգի ազգի ճնշումներով նեղել զանոնք: Կարգադրեց, որ այն քրիստոնեաները, որոնք մահմետական կը դառնան, գլխահարկ չվճարեն. չատերը ուրացան: Կարգադրեց նաեւ որ երբ մահմետականի դէմ դատ ըլլայ, քրիստոնեաները վկայութեան չկանչուին. որ քրիստոնեաները բարձր պաշտօնի չբարձրացուին: Արգիլեց անոնց բարձրաձայն աղօթել, կոչնակ զարնել, կաբայ (qabiya) հագնիլ, թամբուած ձի նստիլ: Եթէ տաճիկ մը քրիստոնեայ մը սպաննէ, պիտի չդատապարտուի մահուան, այլ միայն իբրեւ հատուցում պիտի վճարէ հինգ հազար զուզա[27]»:

Թէպէտ ա՛յս էր ընդհանրապէս քրիստոնեաներու հայեացքը Օմարի քաղաքականութեան մասին, բայց նա արաբական աշխարհի մէջ վայելած է «ազնուագոյնի եւ լաւագոյնի» համբաւ. արաբ մատենագիրները կը դրուատեն իր առաքինութիւններէն՝ աստուածպաշտութիւնը, հեզութիւնը, արդարութիւնն եւ պարզութիւնը. եւ իրօք ալ Օմար հակառակ իր նախորդներու չռայլ եւ զեխ վարքին՝ ապրեցաւ համեստ եւ չափաւոր. եւ փորձեց առաջին ամիրապետներու այս անփառունակ ապրելակերպը վերակենդանացնել: «Բնականաբար, կը գրէ Ա. Կրեմեր[28], այս բարեպաշտ, յախուռն եռանդով վաղուց հնացած կենցաղն վերանորոգել ուզող իշխանը դարձաւ ուղղափառ Ուլէմայի եւ ռամկին համար գաղափարական մարդը: Այսպիսի ազդեցութեան տակ յաճախ կեղծուած է իր նկարագրին իսկական պատկերը եւ կուսակցական միտումներով ներկայացուած իբր այդպիսի: Այս պղտոր աղբիւրներէ յառաջացած է հաւանօրէն այն համբաւն թէ նա մարդասէր կարգադրութիւններ հրատարակած է եւ բարեմիտ, բարեխառն վերաբերմունք ցուցադրած»: Իր բարեացակամութեան նշանակ կը համարի Ղեւոնդ կամ Անվաւերական թղթակցութիւններու նախաբան–վերջաբանը «գերեաց գերեդարձ ընելը». կ'ըսուի նաեւ թէ այնպէս բարեզգած եղած է հանդէպ կալանաւորներու, որ կարգադրած է չկաշկան-

[27] Տես այս մասին նաեւ Եղեան՝ Յառաջաբան Ղեւոնդի, էջ լղ—լէ:

[28] Alfred von Kremer, Culturgeschichte des Orients unter den Chalifen. I. Bd. Wien 1875, էջ 174—175:

*դել զանոնք այնչափ, որ արգելուին կատարել իրենց աղօթքը։*

*Իր նկարագրին այս բարեմասնութիւնները ծանօթ էին Ղեւոնդի հաւանօրէն արաբական միջնորդութեամբ։ Իսկ Անվաւերականին հեղինակը չահագործած է այս համբաւը ի նպաստ քրիստոնէութեան․ եւ ջանացած է անոր հմայքն ցոյց տալ իբրեւ արգիւնք քրիստոնեայ կայսեր թղթին ազդեցութեան։ Թէ՛ այս կէտն, եւ թէ իր քաջ ծանօթութիւնը արաբական հերձուածներու եւ անոնց բազմազան դրութիւններու, կը հայթհայթեն ապացոյցներ, հաստատելու միւսանգամ թէ Անվաւերականիս գրութեան միջավայրն եղած է Դամասկոս-Երուսաղէմ։*

*(Շարունակելի)* Հ. Ն. ԱԿԻՆԵԱՆ



**ՖԵԼԻՔՍ ՕՍՎԱԼԴ**

# ԵՐԿՐԱԽՕՍՈՒԹԻՒՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ

—

**ԳԵՐՄ· ԹՐԳՄ·**

**ՕՏՏՈՅ ՎԻԼՔԷՆՍ**

—

ԳԵՐՄԱՆԵՐԷՆ ԲՆԱԳՐԷՆ ՓՈԽԱԴՐՈՒԱԾ ՀԱՅԵՐԷՆԻ

*(Շարունակութիւն)*

**Զ․**

## ԼԵՌՆԱԳՐԱԿԱՆ ՏԱՐԵՐՔ [4, 5, 46, 92]

*(Հմմտ․ Երկրակազմական Քարտէսը Տախտ․ 1 եւ Հատածակտուրներ՝ Տախտ. 3:)*

Ա·

## ԵԶՐԱԼԵՐԻՆՔ

**25.** — *Հայաստանի լեռնագրական կարեւորագոյն կիկին կազմութիւններն են՝*

1. *Եզրալերինք։ Առնք հիւսիսակողմէն ու հարաւակողմէն կը սահմանափակեն*

2. *Սարահարթի շրջանակը։*

*Այս երկու տարբեր երկրամասերուն նկարագրականն արդէն վերը (§ 1) տրուեցաւ։ Պէտք է հոս աւելցնել թէ եզրալերանց չեղողիր հողաբաժինները կենդրոնական բարձրաշխարհէն (որ համեմատաբար խորասուզուած շրջանակ մը կը ներկայացնէ), բաժնուած են մեծամեծ փապարումներով* (Verwerfung)․ *եւ թէ նախնական փապարման-գաւիթ ափներուն վերին շրթունքները կը կազմեն այժմ ջրաբաշխները, որոնցմէ ղետերը հետեւողական ընթացքով մը վար կը հոսին։ Խաւերը հաւանօրէն Նուազարդեկային ծալմամբ պնդացած են եւ անատակ եղած նորագոյն ծալումներու։ Երկրակեղեւին շարժումներն այնուհետեւ կրնային միայն արտայայտուիլ դիմացկուն զանգուածին խորտակմամբ եւ հողաբաժիններուն տեղախախտմամբ՝ իրարու քով մղուելով, փապարման հակած երեսներուն երկայնութեամբը․ եւ այս առեն հողաբաժիններուն մէկ մասը վեր բարձրացուած է, միւսները՝ փառահողերու խորասուզուած։*

1. *Պոնտական Հողաբաժին:*

*Պոնտական Հողաբաժինը համեմատաբար նեղ երիզ մը կը կազմէ Սեւ ծովուն ափը, որմէ վեր կը բարձրանայ հսկայ ամփիթատրոնման, որ մինչեւ ծառատահմանը* (2460 *մետր) թանձրախիտ անտառներով ծածկուած է։ Այն ափնեայ բեկումները՝ որոնք Սեւ ծովու խորասուզման պատճառ եղած են, կ'երեւայ թէ կը կրկնուին Պոնտական Հողաբաժնին լեռնաշղթայից մէջ։ Առնք դէպ ի Հիւսիս զուգահեռ աղեղներ կը կազմեն։ Խարշուտի ձորէն մինչեւ Կարչխալ լեռը (Բաթումի արեւելակողմը) իրարու կը յաջորդեն՝ Գումբէթ-Էրմէս, Սիր (Սիզ), Զիգանա-Քարակապան-Կիտովա-Նաչլէբի, Ճաղանց-Սողանլու-Քաջքար, Պարխալ-Մաղուրա-Ջալմա, «Կուաշի»-Կարչխալ։ Առնց հիւսիսակողմը համակենդրոն կընթանան փոքր աղեղներ, օրինակի համար՝ Կաղըքլը (Ղաղըխլը), Կեմերէն-Մաքուր,*

# ՀԱՆԴԷՍ ԱՄՍՕՐԵԱՅ

## ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱԹԵՐԹ

ԹԻՒ 12 ԴԵԿՏԵՄԲԵՐ ԽԳ. ՏԱՐԻ 1929

## ՂԵՒՈՆԴ ԵՐԷՑ ՊԱՏՄԱԳԻՐ

### ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ-ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ ՄԸ

*(Շարունակութիւն:)*

### 7. ՆԿԱՐԱԳԻՐԸ, ՈՃՆ ԵՒ ԼԵԶՈՒՆ

Յանձին Ղեւոնդի չենք կրնար փնտռել այնպիսի պատմագիր մը, որպիսին տուած է յոյն կամ լատին մատենագրութիւնը: Բայց հայ ածուին մէջ նա առաջինն է Սեբէոսէն ետքը, որ խելամուտ է պատմագրելու արուեստին. կը կշռէ պարագաները հասուն դատողութեամբ եւ կը ներկայացնէ դէպքերը համառօտախօս, ստուգաբան, իրապատշաճ, պատկերաւոր եւ վայելուչ արտայայտութեամբ:

Զարմանալի փութով եւ ջանասիրութեամբ հոգ տարած է նա ծանօթանալ ժողովրդական աւանդութիւններուն եւ գրաւոր յիշատակարաններուն, հմտանալ պատմական եւ գիտական գրականութեան. որով ձեռք բերած է անչափ հմտութիւն ժամանակակից գիտութեան, զոր աշխատած է չահագործել առաջիկայ ձեռնարկութեան համար:

Որովհետեւ ինքը անչափ համեստ է եւ անփառասէր, կը զգուշանայ խօսիլ իւր անձին առաւելութիւններուն եւ կենսագրական գծերու վրայ. բայց ուժեղ արտայայտութիւնները եւ կորովի գրիչը, որոնք իր մտքին եւ սրտին թարգմաններն են, կը ձգեն լոյս իր անձին վրայ, ցոլացնելու համար հոն մարզուած, հրահանգուած, հանճարեղ հեղինակ մը, որ վարժ է մատենագրելու, ունի պատրաստութիւն ըմբռնելու իրերը եւ նկարելու զանոնք մագաղաթի վրայ գունազեղ եւ ազդու:

Մեր հիացմունքը եւս աւելի պիտի աճի, եթէ նկատի առնենք այն նպատակը, որուն ժամանելու համար ամփոփած է նա իւր ոյժերը: Նա իւր պատմագրութեան նպատակակէտ ընտրած է հայ ժողովրդեան կամ իւր հովանաւորողին ներկայացնել մերձաւոր անցեալին եւ ժամանակակից դիպուածներու միայուն նկարագրութիւնը: Բազմավրդով եւ մարտամբոխ ժամանակներ ունի նա իւր աչքին առաջ, որոնք ծանրացան ազգերու վրայ, յեղափոխեցին պատմութեան պատկերը, չարժեցին ժողովուրդներ ժողովուրդներու դէմ, արեամբ ողողեցին արքունի ճանապարհները եւ ստրուկի ծառայութեան մատնեցին երբեմնի քաղաքակիրթ աշխարհները, եւ յատկապէս իւր սեպհական ժողովուրդը: Ամուր սիրտ եւ անդողդող ձեռք պէտք էր տեսնելու եւ գրի առնելու համար արիւնոտ պատմութիւնը: Ղեւոնդ այդ քաջարի պատմագիրը կը հանդիսանայ:

Այսպիսի ձեռնարկութեան համար ունէր նա նախընթաց առաջնորդներ՝ հին ազգային պատմագիրները: Բայց առանձնապէս իրեն նախատիպ օրինակ եղած է Սեբէոսը, որուն Պատմութեան շարունակողը կոչուած էր ըլլալ: Թէպէտ Ղեւոնդ իւր օրինակէն բազմօք ետ մնաց, բայց եւ այնպէս կը ծրարէ իւր մէջ առաւելութիւններ ալ, որոնք զինքը հայ գրականութեան այս անկեալ շրջանին կ՚ամբառնան փողփողուն երեւութի մը:

Ամէնէն յառաջ յանկուցիչ են իր վրայ անստգիւտ մարդու յատկանիշները: Նա կ՚անգոսնէ ամէն ծուռ ու մութ կածաններ, ճշմարտութեան դէտակն՝ յուռի եւ նկուն երեւոյթներու դէմ կը հրատարակէ պատերազմ, անարդարի եւ բռնաւորի վրայ կը գործէ անխնայ յարձակում: Մենք կը տեսնենք նաեւ իր կուրծքին տակ հայրենասէր սիրտ մը, որ կը բաբախէ, որ կը խնդակցի երբ յաջող բախտը կը ժպտի հայրենիքին եւ կը համակի տրտմութեամբ, երբ իւր ժողովրդեան, սեպհական երկրին անհանդուրժելի աղէտներուն հանդիսատես կ՚ըլլայ:

Մայր երկրին եւ հայ ժողովրդեան հետ կապուած է նա սերտօրէն, իր երակներուն մէջ հայ արիւնի համազարկը կը զգայ։ Ղեւոնդ միաժամանակ սրատես ճանաչող մըն է մարդկային սրտի ներքին ծալքերուն. նա ցուցադրած է դէմքեր, թէպէտ հազուադէպ օրինակներով, զորոնք նկարած է վրձինի թանձր գծերով, ուր բարձրակարկառ են արտաքինէն աւելի ներքին՝ բարոյական մարդու գծերը։ Որչափ ալ անոնք որոշ կաղապարի մը վրայ յօրինուած են, բայց եւ այնպէս կ'ընծայեն ժամանակակից կենցաղին համագումար պատկերն եւ երեւան կը բերեն ճարտար նկարչին ընդունակութիւնները։

Թէպէտ 150 տարիներու անընդհատ կռիւներն նիւթ ունի իր պատմութեան, եւ ստիպուած է զանոնք խճողել սակաւ էջերու մէջ, բայց կենդանի է իւր պատմելու ոճը, որ ունի ինքնայատուկ հրապոյր մը, կաշկանդող ընթերցողին ուշն ու զուրուշը եւ չի թողուր որ ձանձրոյթը տիրէ եւ յորանջը թուլացնէ հետաքրքրութիւնը[29]։ Ամենուրեք կը նկատուի հեղինակին անձնական շահագրգռութիւնը դէպի նիւթը. նա ամէն տեղ սէրն եւ ատելութիւնը հաւասարապէս բաժին հանած է բարեկամին եւ թշնամւոյն, հարազատին եւ օտարին։ Անչափ դրուատիք պէտք է ձօնել իր արժանահաւատութեան եւ առարկայականութեան։ Զենք կրնար մատնանշել կէտ մը, ուր պատմիչը գիտակցութեամբ կեղծած ըլլայ ճշմարտութիւնը։ Բայց խօսած են իր մէջ համակրութիւնն եւ հակակրութիւնը։

Նա արաբական դերիշխանութեան անհաշտ թշնամին է, որուն ճնշող լուծին տակ կ'ապրի իւր հայրենիքը ստրուկի ծառայութիւնը, կը կեղեքուի ժողովուրդը, կը հարստահարուի ազատը, կը բռնաբարուի կրօնը. եւ կ'ըմբոստանայ իր հոգին։ Նա յունասէր է, համակիր քրիստոնեայ Կայսեր եւ կը զգայ թէ քրիստոսապսակ թագաւորին հովանւոյն տակ խաղաղ պիտի բարգաւաճէր կեանքն ու կրօնքը, բայց ժամանակակից միջազգային քաղաքական կացութեան քաջածանօթ՝ գիտէ միանգամայն թէ օրուան հրամայողական պահանջքն է չգրգռել քնացող վագրը։ Մարգուած ժամանակի աղէտին մէջ զգացած է մեկուսի քաղաքականութեան վտանգը։ Ուր բռունցքը տկար տեսած է հոն խոհեմական համարած է լռութիւնը եւ զիջողութիւնը։

Բայց մեղանչած է Ղեւոնդ իւր խղճի դէմ, երբ չափազանց համակրութիւն ի սպաս դրած է Բագրատունի տան, որուն կը պատկանէր եւ Մեկենասը. եւ այս համակրութենէն ծագած է իր մէջ հակակրութիւնը հանդէպ Մամիկոնեաններու, որոնք մրցակիցն էին Բագրատունիներուն։ Այն սեւ մաղձերը, զոր նա կը թափէ Սմբատի որդիներու դէմ, առանց տարակուսի չեն համապատասխաներ իր անկուսակցական ոգւոյն. բայց այս թերեւս դատաստանն էր ժամանակին, որ օր աւուր ուժեղացող Բագրատունի տան դէմ ամէն մրցակցութիւն կամ դաւադրութիւն կը նկատէր դաւաճանութիւն հայրենիքի դէմ, մանաւանդ ժամանակ մը, ուր հակառակող կողման բոլոր ազատագրական փորձերը գերագոյն ուժի առջեւ ձախողած էին. եւ դարձեալ Բագրատունիներն եղած էին, որ իրենց միջամտութեամբ գտած էին հաւասարակշռութիւնը։

Ղեւոնդ յախուռն գրի չէ աւանդած ինչ լսած է ծերերու աւանդութենէն, այլ կշռած է լսածները հասուն դատողութեամբ եւ պատմական կորիզը ընտրած՝ տնկած է իւր անդաստանին մէջ։ Իր եւ Յովհ. Դրասխանակերտցւոյ դատողութիւններուն համար փորձաքար կարող է ծառայել այն դրոյթը, որ կը պատմուի երկու պատմագիրներու քով նկատմամբ Սահակ Կաթողիկոսի ի Խարան Մահմետ զօրավարի հետ ունեցած տեսակցութեան։ Մինչ Յովհաննէս հրաշախառն նկարագիր մը կու տայ դէպքին, Ղեւոնդ կը սիրէ հոգեբանական յեղաշրջումի վերագրել իրողութիւնը։

Անխորհուրդ, յանդուգն ձեռնարկութիւններուն հակառակ է պատմիչը ի բնէ։ Կը դատապարտէ ամէն ապստամբական, ազատագրական փորձ. 775ի ազատագրական շարժումը չէ ոգեւորած զինքը. ոչ անոր համար որ այսպիսի շարժումներու գլուխը Մամիկոնեանները կը գտնուէին, այլ վասն զի «ձեռնամուխ կ'ըլլային յիրս զոր ոչ կարէին վճարել» (137)։ Հայրենասէր էր իր ոգին, բայց եւ խոհեմ եւ հեռատես։ Իր քաղաքագիտական հայեցակէտները սքանչելի կերպով ուրուագծած է Ղեւոնդ այն ճառին

[29] Լեւոն Իսաւրացւոյ թուղթն առ Օմար, ինչպէս նկատեցինք վերը, չի կազմեր Ղեւոնդի պատմութեան մաս, ուստի եւ անտեսելու է զայն Ղեւոնդի նկարագիրը բնութագրելու ժամանակ։

մէջ, զոր դրած է Աշոտ Բագրատունւոյ բերանը (123—124)։

Պատմիչը սնած եւ զարգացած է քրիստոնէական դաստիարակութեամբ. կրօնը մասն է անոր հոգւոյն։ Հոգեւէր է եւ անչափ խորհրդապաշտ։ Կը զայրանայ երբ խանգարուած տեսնէ բարոյական կարգերը. կը գալարին աղիքները, երբ չօշափէն անօրէններու ոտքերը նուիրական տաճարներու սեամքը, երբ անոնց սուրը չողայ աստուածանուէր կրօնաւորներու, քրիստոնեայ ազատին եւ ռամկին վրայ. կը սաւառնի այն պահուն իր ոգին դէպի խորհրդապաշտ եթերներ, կրօնի եւ հայրենիքի համար նահատակուող հերոսներու համար փառքի պսակ հիւսելու։

Հաւատացեալ է, բայց չի սիրեր անհեդեդ զրոյցներ, հրաշախառն բանդագուշանքներ. «խաբեբայ, մոլեկան» կ՚որակէ այն մոնոզոնը, որ «տեսիլ սուտ եւ ըղձանս ի սրտից օր ըստ օրէ պատմելով» կը դրդէր ամբոխը ապստամբութեան (141)։ Սակայն եւ այնպէս բնութեան մանուկը կը խօսի իր մէջ, աստուածավախ վանականը, ապաշխարութեան քարոզիչը, որ համոզուած է իւր հոգւոյն խորքերը, թէ ամէն բարիք ի վերուստ կը ցօղէ եւ ամէն չարիք արդիւնքն է Ամենակալին վրէժխնդրութեան. ուստի քրիստոնեայ բանակին յաջողութիւններուն մէջ կը տեսնէ Նախախնամութեան ձեռքը եւ ձախորդութիւններու մէջ անոր պատուհասող խարազանը։ Բնութեան արհաւիրքները, ծովու անդունդներու մրրկայոյզ ալէկոծութիւնները, որոնք թշնամւոյն նաւատորմիղը ծովու վրայ ցիր եւ ցան՝ ալիքներուն կուր կու տան, Ամենակալին զայրոյթի առհաւատչեաներն են. դիւաւորին երեւումը գուշակ մօտալուտ աղէտին. արդարութեան համար նահատակուողներուն համար մօտ գիտէ պաշտպանող հրեշտակները, եւ ապագան յայտնուած աստուածամերձ անձանց։

Ղեւոնդի կրօնական–դաւանաբանական հայեացքներու նկատմամբ պայծառ գաղափար չի տացուիր իր գործէն։ Կրօնական խնդիրներուն այնչափ ուշադրութիւն միայն դարձուցած է, որչափ անոնք առնչութիւն ունեցած են հասարակական չահերու հետ։ Դաւանաբանական վէճերէն, կաթողիկոսաբանի անցուդարձերէն, եկեղեցական նուիրապետութեան եւ վանական կեանքի հանգամանքներէն կարծես թէ դիտմամբ խոյս տուած է։ Իրմէ իբրեւ եկեղեցականէ կը սպասուէր, որ գոնէ կարճառօտ տողերով յիշատակէր Յովհ. Օձնեցւոյ օրով կամ անկէ յառաջ եւ յետոյ տեղի ունեցած վիճաբանութիւնները դաւանաբանական, ծիսական եւ բարեկարգական խնդիրներու մասին, որոնք, ինչպէս այլուստ քաջ յայտնի է, այնպէս զբաղցուցած էին Ը. դարու առաջին քառորդը. եւ կամ Հայ Աղուանքի կրօնական–եկեղեցական յուզումները, որոնց մէջ նաեւ ամիրապետներ միջամտած էին։ Ձենք կրնար հաւատալ թէ այս դէպքերը, որոնք նաեւ գրքերու մէջ արձագանգ գտած էին, վրիպած ըլլային իր բազմաքնին չրջահայեցութենէն։ Ի՞նչ էր սակայն այս անտարբերութեան պատճառը։ Մեզի համար այս կէտը գաղտնիք կը մնայ։ Եւ աւելորդ է զայն լուծելու համար պեղել հիմերը։ Այս տեսակէտով արդէն ամբողջ չրջանը, երբ ապրեցաւ Ղեւոնդ, կը գտնուի նմանօրինակ արամուրով պատած։ Թողունք զինքը անվրդով իր համոզմունքներուն մէջ։

Հաւատարիմ այն սկզբունքին թէ «ոչ է պատմութիւն ճշմարիտ առանց ժամանակագրութեան» (Խոր. Բ. 82), առանձին ուշադրութեամբ հետեւած է պատմիչը պատմութեան «կարգի չարքին»՝ ժամանակագրութեան, որ «կարմիր թելի մը պէս կ՚ընթանայ բովանդակ պատմութեան մէջ[30]»։ Իր ժամանակագրութիւնը հիմնուած է ամիրապետներու գահակալութեան տարիներու վրայ. քաղաքական թատերաբեմին վրայ կատարուած արարուածները պատմած է իւրաքանչիւր ամիրապետի վարքին մէջ. որով հնարաւորութիւն տրուած է ստուգել դէպքերու ժամանակագրութիւնը որոշ հանգոյցներով։ Այս ժամանակամիջոցները երբեմն աւելի սեղմած է, այնու որ դէպքերը կապած է ամիրապետներու գահակալութեան որոշ տարիներու հետ. տեղ տեղ նաեւ ամսաթուերով եւ օրուան պատկերներով ճշդած է դէպքերու ճշգրիտ ժամանակը։ Հայոց եւ Արաբական թուականներու կիրառութենէն խուսափած է. վերջինս թէեւ ի սկզբան հիմ ուզած է ընտրել իւր ժամանակագրութեան, բայց ապա լքած է բոլորովին. իսկ Հայոց թուականը ամբողջ մատենին մէջ անգամ մը միայն յիշատակուած է[31]։

---

[30] Daghbaschian, էջ 63, ծան.։
[31] Արծրունի եղբայրներու վկայաբանութեան վերջը (էջ 165) կը նշանակէ Ղեւոնդ. «յորում էր

*Որչափ ալ ժամանակագրական կողմնացոյցը իրեն առաջնորդ ունի Ղեւոնդ, բայց նա կապուած չէ տարիներուն, ինչպէս տարեգիր մը, այլ կը պատմէ երբեմն դէպքերը իրենց սկզբնաւորութեան եւ վերջաւորութեան մէջ, թէպէտ տարիներու շարք մը պահանջեն անոնք* (*հմմտ.* 121—124). *ժամանակագրական ճանապարհէն այս օճառումները չեն խանգարեր սակայն իր ուղիղ ընթացքը, որուն ուշադիր է միշտ*[32]:

*Որչափ մերձ է ժամանակն իրեն, այնքան աւելի յստակ են պատմական պատկերներն եւ կը ցուցին դէմքերը ուժեղ եւ կենդանի: Բայց դարձեալ հարեւանցիօրէն նկատուած են երկրին ներքին յարաբերութիւնները, նախարարական տուներու փոխադարձ աղերսներ, եւ առհասարակ տնտեսական եւ քաղաքակրթական պայմաններու որպիսութիւնը: Իւր պատմութիւնը կը սահմանափակուի գրեթէ ամբողջութեամբ պատերազմներու թուարկութեան շուրջը. երբ զարմանալի բարեխղճութեամբ ջանք տարած է նշանակել ամենայն ճշդութեամբ անգամ գերիներու կամ անկեալներու թիւը* (32, 104, 126, 156, 168 *եւն*):

*Անշուշտ անարդարացի է պահանջել Ղեւոնդէն, որ նա տար մանրամասնութիւններ կամ խորհրդածութիւններ քաղաքական եւ զինուորական իրադարձութիւններուն, պատերազմներու շարժառիթներուն, զօրավարներու ոյժին, ընդունակութեանը, հանճարին եւ տաղանդին, ռազմագիտութեանը, պատերազմական խորագիտութեան, բանակին բարոյական խանդավառութեան եւն մասին: Այս կէտերը թէեւ բոլորովին չեն անտեսուած մեր պատմագրէն, բայց եւ այնպէս կ'իյնան իր հմտութեան սահմանէն դուրս. որովհետեւ ինքը եկեղեցական է եւ ոչ զինուորական պատմիչ:*

*Բայց իրաւամբ պիտի պահանջուէր իրմէ, որ աւելի քննադատէր, աւելի արմատէն տարրալուծէր հայրենիքին բարոյական, կրօնական եւ քաղաքական պայմանները, ձաղէր նախարարական տուներու ներքին երկպառակութիւնները, թուլութիւնը, բարոյալքումը ժողովրդեան, աւելի ուժգին բողոքէր դէպի մահմետականութիւն հաւատափոխութիւններու, առ այս գործադրուած ճնշումներու դէմ, պարագաներ, որոնք դժբախտաբար այնքան նպաստեցին արաբական յառաջխաղացութիւններուն, նուաճումներուն եւ տեղաւորման առհասարակ Արեւելքի, բայց յատկապէս Հայաստանի մէջ:*

*Հակառակ այս աննպաստ կողմերուն՝ պիտի ըսենք որ Ղեւոնդ բարեաւ հասած է այն նպատակին զոր դրած էր իր առաջ:*

*Ղեւոնդ՝ պատմիչ եւ ոչ ճարտասան ուզած է ըլլալ. ուստի իր պատմութիւնը չէ յանձնած հռետորական արուեստին, ինչպէս այս կատարուած է յետագայ պատմիչներու քով: Ճառերու, ողբերու եւ նման հռետորական արտայայտութիւններուն խնայօրէն միայն մուտ շնորհած է իւր Պատմութեան մէջ: Ասոնք յէականս արգասիքն են իր ստեղծագործող մտքին. յօրինուած են համեստ ծաւալով, ագուցուած են պատշաճ տեղեր եւ երեւան կու գան շատ շնորհալից եւ բնական կերպարանքի մէջ: Եւ առհասարակ իր գրութեան եղանակը շատ պարզ է, անբռնազբօսիկ, անսեթեւեթ, բայց կուռ, զօրեղ, զինուորական կարճաբանութեամբ՝ ազդու եւ վճռական:*

*Երկրորդ դէմքով իւր Մեկենասին ուղղուած արտայայտութիւններ չկան հոն. նոյն իսկ այն տեղերը, ուր խօսքը կը դառնայ իւր պաշտպանին հօրը մասին: Կը սիրէ խօսիլ առաջին դէմքով. աւելի յոգնակի քան եզակի թուով* (*հմմտ. ճառեցից* 19, 37, *ասացից*, 133. *կայ եւ մեզ դառնալ* 125, *կայ եւ մեզ պատմել* 158, *զոր պատմեցաք*, 19. *որպէս լուաք* 30, *որպէս ուսաք* 150, *զորմէ ճառեցաք*, 32 *եւն*):

*Կարծես թէ շրջանկատուած է պատմառէր ունկնդիրներէ եւ անոնց անցեալ ժամանակներու մասին գրոյց կ'ընէ: Իր պատմելու ընթացքը կ'ընդհատուի երբեմն երբեմն ալիողորմ տեսարաններու, գերեվարութիւններու, կոտորածներու ի տես՝ հեծեծանքներով, հառաչանքներով* (9—10, 21—22, 136—137 *եւն*), *նաեւ մեկնողական խորհրդածութիւններով* (117/8): *Ասոնք հռետորական փնտռուած տեղիքներ են՝ չահագրգռելու ունկնդիրներու ուշադրութիւնը. եւ արդէն ժամանակը զոր կը նկարագրէ, կ'ընծայէր առիթներ թաթաղուն եւ գեղուն առատութեամբ: Պատմութեան ինչ ինչ հատուածներ ցոյց կու տան թէ պատմիչը լաւ*

---

*թուականութեան Հայոց ՄԼԳ», կարդա ՄԼԴ.* Ghazarian, ZAPh. II, *էջ* 199 *ծն.*:

[32] *Հմմտ. իւր ասութիւնները. «Կայ եւ մեզ դառնալ յառաջին շարս կարգի պատմութեանս. կայ եւ մեզ պատմել» եւն:*

ուսած եւ ըմբռնած էր հռետորական արուեստը եւ զգացած անոր պէտքը պատմական գրականութեան մէջ։ Ցանդուգն նմանութիւններ, այլաբանական պատկերներ ցանցառ անգամ չեն փայլատակեր իր նկարագրութիւններէն· համեմատութիւնները յաճախ Ս· Գրքէն փոխ առնուած՝ առատաձեռնօրէն սփռուած են իւր մատենին մէջ։ Իր գրչին յաջողագոյն նկարագրութիւններն կարող են նկատուիլ ծովամարտը Կ· Պոլսոյ առաջ (106—110, հմմտ· եւ 114)· եւ Արծնիի կռիւը (148—151)· ճարտասանական չարագրութիւններէն կը յիշեմ Լեւոնի պատասխանը առ Մսլիմ (էջ 105—108)։

Ղեւոնդի լեզուին վրայ դատաստան ընելէ յառաջ պէտք է աչքի առաջ ունենալ այն որ նա կը ծաղկէր Ը· դարու երկրորդ կէսին, երբ ռամկին քով լեզուն սկսած էր արդէն ենթարկուիլ աղաւաղութիւններու եւ արաբական ազդեցութեան։ Գրականը, որ կը մշակուէր մենաստաններու մէջ, դարուն սկիզբները ընդունած էր կեղծ դասականի նկարագիրը — որ պերճաբանութիւն կը կոչուէր — հետեւողութեամբ հելլենաբան դպրոցներու արտադրութիւններուն։ Թէոդորոս Քռթենաւորի, Յովհ· Իմաստասէրի, Խոսրովիկի գրութիւնները այս հոսանքին մէջ ծնած էին։ Առանց տարակուսի նաեւ Ղեւոնդ առաւել կամ նուազ չափով նոյն դպրոցի աշակերտն էր· եւ իւր առաջին վարժութիւնները այս ուղղութեամբ յօրինուած էին անշուշտ, յատկապէս երբ նիւթը փիլիսոփայական—աստուածաբանական բնաբաններով կը զբաղէր։ Բայց յետագային, երբ ձեռք առաւ պատմական գրականութիւնը, տեսաւ հոն ինքնուրոյն ոճ, մանաւանդ երբ ծանօթացաւ Ագաթանգեղոսի եւ Սեբէոսի պատմագրութիւններուն։ Այսպէս խորհիլ կու տայ իր ոճագրութիւնը (phraséologie), որ բացարձակապէս բանագողութեան վրայ կառուցուած է· եւ արդիւնքն է զօրաւոր յիշողութեան։ Իր ոճագրութիւնը գոյնզգոյն է, լեզուն երփներանգ, որովհետեւ կը բաղկանայ զանազան տարրներէ, բայց ճաշակագէտ գրչի տակ սքանչելի ներդաշնակութիւն գտած։ Եթէ դասականը գործած է հոն հզօր ազդեցութիւն, բայց նաեւ ոչ-դասական հեղինակները դրոշմած են իր վրայ իրենց կնիքը։

Նոր Բառգիրք Հայկազնեան լեզուի (Ա, 14) որակած է Ղեւոնդի լեզուն «յստակ եւ ընտիր հայկաբանութեամբ»։ Հակառակ այս ճշգրիտ որակման Շահնազարեան կը գրէ· «Ոչ է հակիրճ որպէս Մ· Խորենացւոյ, ոչ պարզ որպէս Ղ· Փարպեցւոյ, ոչ ազդոյ որպէս Եղիշէի եւ ոչ ծաղկանկար որպէս Յովհաննէս Կաթողիկոսի, այլ հասարակ հայախօս» (էջ 15)· իսկ գաղղիերէն թարգմանութեան յառաջաբանին մէջ կը յաւելու այս տողերուն՝ «նաեւ ուղիղ չէ եւ ոչ ալ սահուն, մէկ խօսքով ոճ մըն է, որ սովորականէն աւելի բան մը չունի· Ղեւոնդ կը սիրէ կրկնութիւններ, եւ իւր ոճը կը կրէ արդէն հայ մատենագրութեան անկման նկարագիրը։ ···Պարզուկ եւ յաճախ մթին ոճով գործ մըն է, անարժէք եւ անշահագրգիռ իբրեւ մատենագրական աշխատութիւն· բայց չափազանց անհրաժեշտ եւ շատ թանկագին է իբրեւ պատմական երկասիրութիւն» (էջ XIV)։

Բնականաբար, քանի անծանօթ էր հրապարակին Ղեւոնդի Պատմութեան բնագիրը, հասարակութիւնը չէր կարող դեռ դատել Շահնազարեանի այս խիստ դատաստանին արդար կամ անիրաւ ըլլալը, բայց իրաւունք ունէր Մասեաց Աղաւնի (1856, էջ 242) զարմանք յայտնելու թէ ինչպէս Աւգերեան այսպիսի գրուածք մը «յստակ եւ ընտիր հայկաբանութեամբ» կը հռչակէր։ Շահնազարեան սակայն յետս չկոչեց իւր յախուռն վճիռը եւ պնդեց յամառօրէն իւր դատաստանին վրայ հայերէն բնագրի հրատարակութեան յառաջաբանին մէջ։ Երբ Շահնազարեան զՅովհ· Դրասխանակերտցի եւ զՄ· Խորենացի իբրեւ հայկաբաններ եւ ոճագէտներ համեմատութեան կ'առնէ բնորոշելու համար Ղեւոնդի ոճը, ցոյց կու տայ արդէն իւր անչափահասութիւնը այսպիսի լեզուական խնդիրներ լուծելու մէջ։

Հ· Գ· Զարբանալեան (էջ 479) Շահնազարեանի ազդեցութեան տակ է· եւ տարտամօրէն կ'արտայայտուի· «ոճոյն նկատմամբ շատ պարզ եւ հետեւակ է, եւ գրեթէ հասարակաց խօսից ոճէն չտարբերիր։ Տարակոյս չկայ թէ Ե· դարուն պատմչաց ոճը՝ Ղեւոնդեայ երիցուն գրքին մէջ չտեսնուիր· բայց եթէ ուզենանք նկատել զինքն իբրեւ Ը· դարու մատենագիր մը, մեզի համար թէ ոճովը եւ թէ պատմագրելով մտադրութեան արժանի անձ մը կ'երեւայ Ղեւոնդ»։ Այս իմաստով կը գրէ նաեւ Հ· Ղ· Ալիշան

(Հայապատում Ա․ § 48)․ «Թէեւ չունենայ տիրաբար եւ վսեմական ոճ մի, … բայց դարձեալ խոհական կերպ մի ցուցընէ, եւ բաւական յստակ շարադրութեամբ, ընդ մէջ Ե․—Զ․ դարուց նուրբ ճաշակով գրողաց եւ ընդ մէջ Ժ․ դարու չափազանց ճոխաբանից, ինչպէս Յովհաննէս Զ․ Կաթողիկոսն»։

Հակառակ այս աննպաստ գնահատութեան Ղեւոնդի ոճին, Աւգերեանի կտրուկ վճիռը պիտի համարիմ ուղղագոյն։ Ղեւոնդ «յստակ եւ ընտիր» հայերէնով մը կը մարմնացնէ իւր մտքին յղացումները։ Այդ հայերէնը ռամկօրէն լեզուն չէ, զոր թոթոված էր որրանին մէջ, այլ ստացուած է աշխատութեամբ, եւ արտայայտուած՝ արուեստով։ Ճաշակ, գեղարուեստ, գրական թուիչք երեւցնել դիտուած է հոն։ Արդիւնքն է այն՝ դասական հեղինակներու մէջ երկար դեգերումներուն, յաճախ ընթերցման եւ հետեւողութեան։ Թէեւ անոր ձեռքին տակ կը նշմարենք դասական եւ ոչ–դասական հեղինակներ միաժամանակ, բայց ճաշակընտիր քիմքը եւ քաջատեսիկ տեսողութիւնը գիտցած են զանազանել դասական լեզուին հմայքը եւ հոսանքը, եւ ջանացած են իւրացնել անոր առաւելութիւններն, եւ առանց կաշկանդուելու ոչ–դասական հեղինակներու ծանր շղթաներով, փորձած է ծաղկաքաղել անոնցմէ ալ։ Օրինակ առած է իրեն նա՛ եւ այս՝ կէտի մէջ Սեբէոսը, որ ջերմեռանդ հետեւող մըն էր դասականներուն։ Ղեւոնդի ձեռքը սիրելի մատեաններ եղած են Ս․ Գիրքը եւ Ագաթանգեղոս․ անոնք լեզու տուած են իրեն եւ շնչած բանաստեղծական աւիւն։ Նմանողական է իր լեզուն, ուստի եւ արուեստական, բայց ոչ բռնազբօսիկ, սեթեւեթեալ․ պատշաճած է պատմագրին ոճին վայելչօրէն եւ ստացած բնականութիւն անոր գրչին տակ։ Իր գեղարուեստ վրձինին տակ պատմական նիւթը գտած է վայելչագէմ կերպարանք․ եւ դէպքերու միապաղաղ կրկնութիւնները զգեցած են բազմագոյն հանդերձներ, եւ այսպէս ներկայացած են զանազան նկարագրութիւններով՝ հրապուրիչ եւ ոգեւորիչ։ Անոր պատմութեան հոսանքին մէջ ինչպէս դիպուածները կ'ընթանան սահող ժամանակին հետ մրցակից, նոյնպէս բառերու կոհակները կը մղեն զիրար յառաջ եւ կը պարարեն մեր զգայարանքները վէտ վէտ ալիքներու անընդհատ շարժումները․ եւ հաճելի են ինչպէս ջուրերու մեղմ բախումները ափին, նոյնպէս ալիքներու շարժումէն յառաջացած գեփիւռները։

Քերականութեան կանոնաւորութիւնը, բառերու ընտրութիւնը, հայացի շարադասութիւնը եւ երաժշտականութիւնը զարդն են Ղեւոնդի լեզուին։ Ագաթանգեղոսի կաղապարի վրայ կը կերտէ բառեր, ժողովրդական բառամթերքէն փոխ կ'առնէ ասութիւններ, վայելչութիւն տալու իւր արտայայտութիւններուն եւ յստակութիւն իւր մտքերուն։ Հայ լեզուագիտութիւնը պիտի գտնէ Ղեւոնդի արուեստանոցի մէջ հարուստ նիւթեր ի նպաստ հայ բառագիտութեան։

Հելլենական դպրոցի հետեւողութեամբ դարբնուած կեղծ–դասական դանդաղկոտ եւ դժուարընկալ պատմագրելու ոճագիտութիւնը, զոր Մովսէս Խորենացի հրապարակ բերաւ, տակաւին անծանօթ է մեր հեղինակին․ անծանօթ է իրեն նաեւ Յովհ․ Դրասխանակերտցւոյ ճապաղ, ճոխաբան բայց աղքատիմաստ հռետորութիւնը։ Ղեւոնդ կը սիրէ արտայայտութեան պարզութիւնը, յստակութիւնը․ անոր գրչին տակ բառերը իմաստ ունին․ անոնք կը ծառայեն գաղափարները մարմնացնելու եւ տեսանելի ընծայելու եւ ոչ բառախաղեր սարքելու՝ եւ ընթերցողները զարմացնելու համար։

Ուստի Ղեւոնդ իւր այս աշխատութեան մէջ դարձեալ վերջինը կը հանդիսանայ հայ պատմագիրներու մէջ, իբրեւ հետեւող ընկալեալ պատմական ոճին։ Նա ստուեր չէ բերած նախորդ պատմագիրներու անուան․ այլ ընդհակառակը զարդացուցած է անոնց արուեստը եւ երանգով մը կատարելագործած։ Ղեւոնդ նպաստած է հայ պատմագրութեան այնու որ առաւել ուշադիր եղած է լեզուական, հռետորական եւ գեղարուեստական արտայայտութեան, աւելի լրջութեամբ մերձեցած է նիւթին եւ հակիրճ, սեղմ նկարագրութեամբ ջանացած է գրի առնել ժամանակներու դիպուածները։

Այս հանգամանքները կը ստիպեն զմեզ աւելի ուշադրութիւն նուիրել անոր անձնաւորութեան, որ կը ցուցադրէ տաղանդաւոր նկարագիր մը, ծննդական միտք մը, բազմահմուտ եւ փորձառու մատենագիր մը։ Անոր գրիչը, որ այսպիսի կիրթ գրական ոճի մը կ'իշխէ, թոյլ կու տայ ենթադրելու թէ ձեռքը սրած էր զայն յաճախակի գործածութեամբ։ Եւ եթէ Բագրատունի իշխան մը

*յանձնարարած է անոր պատմական երկիս յօրինումը, պէտք է կարծել թէ անոր գրչի ընդունակութիւնները ծանօթ էին իրեն ուրիշ աշխատութիւններէ ալ։*

*Ղեւոնդի պատմական աշխատութեանս գնահատականը գեղեցիկ կերպով տուած է Կ. Եզեան հետեւեալ տողերու մէջ (էջ ՀԹ)։*

*«Մատեանն Ղեւոնդեայ կարեւոր է յաչս բանասիրաց ոչ միայն վասն ստուգաբան պատմութեանն անցից եւ դիպուածոց հայրենի աշխարհիս մերոյ, այլ եւ այնու զի տեղեկութիւնս ոչ սակաւ աւանդէ եւ յաղագս Արաբացւոց, Խազրաց եւ Բիւզանդացւոց իւրոյ ժամանակին, զորս չէ գտանել առ այլ պատմագիրս մեր եւ օտարաց։ … Եւ քանզի արաբացի պատմիչք անցից այնր ժամանակի յարեան անագան՝ ի Թ. եւ ի Ժ. դարս, իսկ մատենագրացն Յունաց տեղեկութիւնք հատուկտիրք են մեծաւ մասամբն եւ ոչ ըստ ամենայնի արժանահաւատք՝ վասն այնորիկ եւս առաւելուն արժանիք ստուգաբան պատմութեանն Ղեւոնդեայ»։*

*Ղեւոնդ լինելով միակ պատմիչը* 660—790 *շրջանին համար, զարմանալի չէ որ անոր մատեանը վայելած է յետագային մեծ ընդունելութիւն։ Անագանագոյն պատմիչներէն Ասողիկ, Մխիթար Անեցի, Սամուէլ, Վարդան եւ Կիրակոս կ՚օգտուին անկէ սիրով։ Բայց զարմանալի է որ հնագոյններէն Յովհ. Դրասխանակերտցի անծանօթ մնացած է Ղեւոնդի մատենին։ Թովմաս Արծրունի թէեւ յանուանէ չի յիշեր զՂեւոնդ եւ պատմական քաղուածներ չի տար անկէ, բայց կարդացած կ՚երեւայ մատեանս եւ ազդուած անոր բառամթերքէն. Ղեւոնդի միջնորդութեամբ ծանօթացած է նա նաեւ Օմարի եւ Լեւոն կայսեր թղթակցութիւններուն եւ ամիրապետներու ցանկին։ Այս կէտերու մէջ ունի բառական քաղուածներ ալ։ Յուսալի էր լսել իր մօտ Արծրունի տան վերաբերեալ հատուածներու արձագանգը, մանաւորապէս Արծրունի եղբայրներու փառաւոր նահատակութեան յիշատակութիւնը, զոր Ղեւոնդ այնպէս զգայուն տողերով նկարագրած էր։ Թերեւս զայն հրապարակի վրայ իբրեւ ծանօթ հեղինակութիւն ենթադրելով՝ չէ ուզած կրկնութիւն ընել։ Այս զգուշութիւնը հաւանական կ՚երեւայ այնու, որ Թովմաս առհասարակ հարեւանցիօրէն միայն ներկայացուցած է արաբական տիրապետութեան առաջին* 150 *ամեայ շրջանը, որ իւր ընդարձակ նկարագրութիւնն ունէր Ղեւոնդի պատմագրութեան մէջ։*

Հ. Ն. ԱԿԻՆԵԱՆ



# Chronologie der arabischen Statthalter von Armenien in den Jahren 833—887*.

Von RICHARD VASMER.

In Armenien brachen unter *al Mutewakkil* (232—247 H. = 847—861 n. Ch. G.) neue Unruhen aus und der Kalife ernannte zum Statthalter von Armenien und *Aḏerbaiǧān* den *Abū Sa'īd Muḥammed ibn Jūsuf al Merwezī.* Dieser starb aber plötzlich, noch vor der Abreise nach den ihm anvertrauten Provinzen. *Ṭabarī* III, 1407 (*Ibn al Aṯīr* VII, 37, de GOEJE, Fragm. II, 546) setzt seinen Tod ins Jahr 236 (850—851). *Thoma Artsruni* zufolge (BROSSET, Coll. I, 96—97, vgl. TOPDSCHIAN, MSOS VIII, 118f.) war *„Abu Seth"* schon früher zum Statthalter ernannt worden, hatte aber den armenischen Boden noch nicht betreten, als die armenischen Fürsten ihm die verlangten Steuern sandten und ihn baten sich zurückzubegeben, worauf er nach *Sāmarrā* zurükkehrte und die weitere Erhebung von Steuern dem Emir von Arzan *Mūsā ibn Zurāra* überließ. In *Waspurakān* sollte ein gewisser *Alā* die Steuern einsammeln. Beide erlitten aber gegen die Armenier Niederlagen. *Abū Sa'īd*, der sich von neuem nach Armenien aufmachte, starb plötzlich während der Reise (BROSSET, Coll. I, 102) und der Kalife ernannte im Jahre 300 arm. Ära (851 n. Ch. G. = 236 H.) *Abū Sa'īds* Sohn *Jūsuf* (*Ṭab.* III, 1407, *Ibn al Aṯīr* VII 37, *Ja'qūbī* II, 598, GHAZARIAN 51. Nach *Abū 'l Farağ, ed Salhani,* 247, im Jahre 237). *Belāḏurī* 211 verlegt diese Ernennung ins zweite Jahr von *al Mutewakkils* Regierung, was, da *al Wāṯiq* am 24 *Ḏū'l Hiğğa* 232 gestorben war (*Ṭabarī* III, 1364), dem Jahre 234 entsprechen würde. Augenscheinlich verwechselt *Balāḏurī* ihn hier mit seinem Vater, was dann zu der Erzählung des *Thoma* von

* Fortsetzung und Schluß des Artikels in „Handes Amsorya" 1929, Sp. 41—47.